# Остаётся надежда

**Калужский журналист и поэт Алексей Золотин неоднократно публиковался на страницах нашего журнала, мы печатали интервью с ним. Недавно Алексей Петрович отметил свой 75-летний юбилей. Это стало поводом для этой беседы.**



***– Алексей Петрович, знаю, что вы человек многосторонних интересов. С чего начнем наш разговор?***

– С поэзии. В ней все: и культура, и характер, и любовь, и ненависть…

***– И ненависть?***

– А как же! «То сердце не научится любить, которое не может ненавидеть».

***– Это Некрасов. А Золотин?***

– Я тебя ненавижу – так тебя я люблю. Уходи – мне спокойнее, если ты возле...»

***– Но больше все-таки, наверное, в ваших стихах не ненависти, а любви...***

– Конечно. Даже названия моих книг говорят об этом – «Любимые», «Люблю и верую», «С любовью. Автор», «Встречи и расставания», «Орбита сердца».

***– «Любовь – а что это такое?»***

– Это вы цитируете меня. Отвечу продолжением стихотворения: «Об этом знают только двое, два самых мудрых мудреца».

***– Кроме любви, какие еще темы волнуют поэта Алексея Золотина?***

– Судьба деревни, наша калужская природа и, как ни странно, война, которую я застал пятилетним мальчишкой, которая забрала у меня отца и нескольких дядей.

А в последние годы больше тянет к публицистике. Пытаюсь осмыслить, что происходит в мире, в стране. Размышления об этом выросли в поэму «Молох века», изданную отдельной книгой. Они же составили заключительную часть моего готовящегося к изданию сборника «Боль».

***– Были годы, когда поэзия звучала, говоря опять же словами Николая Некрасова, «как колокол на башне вечевой во дни невзгод и бед народных», во многом определяла цвет времени. Вспомним хотя бы 60-70-е годы с Евгением Евтушенко, Андреем Вознесенским, Робертом Рождественским, Булатом Окуджавой, Бэллой Ахмадулиной и многими-многими другими замечательными поэтами. А сегодня можно ли так сказать про поэзию?***

– Увы. Причем вот что интересно. Как правило, протуберанцы поэзии возникали в период мощных общественных потрясений, являясь их то предвестником и глашатаем, то отголоском. Так было в годы двух Отечественных войн – 1812-го и 1941-1945-го, после восстания декабристов, во время революций 1905-го и 1917 годов, при «оттепели» 60-х. А вот горбачевская перестройка, ельцинские лихие 90-е такого всплеска поэзии не вызвали, и это для меня непонятная тайна.

90-е годы вообще отличались падением интереса к культуре, литературе, искусству. Искусство было заменено подделкой, называемой маскультурой. Сейчас, правда, пошел обратный процесс, процесс возрождения истинного искусства. Но, видимо, пройдут годы, чтобы появился поэт такой величины, как Пушкин, Лермонтов, Некрасов, Тютчев, Маяковский, Есенин, Твардовский, Симонов и более поздние их собратья.

***– Калужская земля всегда посильно подпитывала русскую поэзию…***

– Да, в историю нашей литературы – беру только послевоенные годы – вошли имена таких поэтов, как Сергей Поделков, Булат Окуджава, Валентин Берестов, Николай Панченко, Михаил Воронецкий, Валентин Волков, Валерий Прокошин, Олег Бушко, Александр Шевелев, Сергей Питиримов, Анатолий Кухтинов, Анатолий Кузьмичевский, Евгений Антошкин, Валерий Васильев. И сегодня еще, слава Богу, творят поэты, уже причисляемые к старшему поколению, - Станислав Куняев, Валентин Ермаков, Арсентий Струк, Валентина Невинная, Эльвира Частикова, Вера Чижевская, Людмила Филатова, Николай Якунин, Виктор Пухов, поэты среднего поколения или приближающиеся к нему-Марина Улыбышева, Михаил Бондарев, Дмитрий Кузнецов, Юрий Холопов, Татьяна Петрова, Маргарита Бендрышева, Нина Смирнова, Александр Трунин.

***– Как сегодня живется поэтам?***

– Живется сложно. Если раньше поэт мог худо-бедно существовать за счет изданных им книг, то теперь, чтобы издать книгу, автору самому нужно изрядно накопить денег или обращаться к спонсорам. И то, и другое посильно не каждому.

Хотелось бы, чтобы государство в целом и власти на местах хотя бы частично взяли на себя заботу о поддержке литературы и, в частности, поэзии. Калуге нужен полнокровный литературно-художественный журнал. Делались попытки – и в Калуге, и в Обнинске, и в Тарусе – выпускать журналы и альманахи, но только при усилиях одних энтузиастов, без помощи государства из этого вряд ли что-либо получится.

***– Так уж безнадежна ситуация?***

– Безнадежного ничего нет. Есть надежда на лучшее. С ней и живем.

***Беседовал Петр КОНОНОВ.***

***

Так природа, видимо, устроена:
Как ты ни старайся, ни потей –
Мчится жизнь удвоенно, утроенно,
А кругом – следы потерь, потерь...

Вроде б как привыкли к ним, но всё-таки
Каждую из них считай за две,
И крутой реальности ошмётки
Бьют, да норовят по голове.

Ну да что же, пусть лютуют лютни,
Выругавшись: так, мол, вашу мать, –
Выдержим, ведь мы такие люди,
Что терпенья нам не занимать.

***

Пора подумать о душе...
Я о душе уже подумал.
Но, знать, томиться мне в туше,
Поскольку ты – борец Поддубный.

Тебе не эдак всё, не так.
Да пусть я буду хоть двужилен,
Но супротив твоих атак
(Как и Поддубного) бессилен.

На волю выбраться б душе -
Я столько б совершил открытий!
Но – рядом ты.
Я вновь в туше,
Я снова мордою в корыте.

***Алексей ЗОЛОТИН.***

# «Բախտի ճամփեքը տարբեր են լինում, Բախտն ամեն մեկին սիրում է տարբեր...»

*ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ*



Սարգիս Կարապետյան

**Կան անհատներ, որոնց ի վերուստ ուղենշված է դժվարին ճանապարհ, բայց նրանք չվարանելով ու աներկյուղ են անցնում կյանքի՝ իրենց համար նախանշված արահետով, քանզի բարությունը, իմաստնությունը, հաստատակամությունը եւ սկզբունքայնությունն են նրանց ուղեկիցները:**

**Այդ եզակի անհատներից է նաեւ Սարգիս Ստեփանի Կարապետյանը:**

Տաշիրի տարածքի Լեռնահովիտ գյուղում բնակվող Ստեփան Կարապետյանի հարկի տակ 1932 թ. հունվարի 10-ին ծնվեց նրանց 6-րդ երեխան, ու տունը նորից լցվեց մանկական ճիչով՝ ջերմացնելով ծնողների սրտերը:

Չնայած դժվարություններին (ծանր էին ժամանակները)՝ Սարգիսը մեծացավ ծնողների և իր ավագ քույրերի ու եղբայրների սիրով ու հոգատարությամբ շրջապատված:

1939 թ. ուշիմ երեխան արդեն գյուղի միջնակարգ դպրոցի աշակերտ էր: Անհոգ չի անցել նրա մանկությունը. պատերազմ էր, ավագ եղբայրները՝ բանակում, Ստեփան հայրիկը, որին բոլորը գյուղում հարգանքով «Ամի» էին ասում, բրիգադիր էր, պատգամավոր, պատասխանատվության մեծ զգացում ուներ իր գործի նկատմամբ և ամբողջ օրը կոլտնտեսության դաշտերում էր անցկացնում, տանը լինելու ժամանակ չուներ: Տան հոգսի մի մասը Սարգիսն իր ուսերին էր տանում: Հաճախ տարիների հեռավորությունից տխուր թախիծով է հիշում այդ օրերը, հիշում, թե ինչպես (դեռ 6-րդ դասարանի աշակերտ) ոտքով գնացել է հարևան գյուղը՝ մի դույլ ցորեն աղալու (տանը ալյուր չկար):

Բայց, այնուամենայնիվ, սովորելն առաջնային էր, և 1946 թ. ընդունվեց Վանաձորի (այն ժամանակ Կիրովական) մանկավարժական ուսումնարանը: Այստեղ էր, որ հասկացավ, թե դեռ որքան բան ունի սովորելու: Գրքերը դարձան նրա անբաժան ուղեկիցները: Կարդում էր գիշեր-ցերեկ, անգամ հանգստի ու քնի հաշվին: Միշտ սիրով է հիշում ուսումնարանի իր ուսուցիչներին. «Այս ուսումնարանն ինձ համար դարձավ իսկական ուսումնառության աղբյուր, այստեղ ես ստացա հիմնավոր կրթություն՝ շնորհիվ շատ սիրված մանկավարժների, որոնց երբեք չեմ մոռանում՝ Չալադյան, Այվազյան, Թումանյան, Հախումյան, Սիմոնյան, Սարգսյան... Նվիրյալ աշխատողներ էին, և նրանց եմ պարտական իմ բնավորության ձևավորման, համառ աշխատասիրության համար»:

Ուսումնառության 4 տարիները նրան շատ բան սովորեցրին, և երբ 1950 թ. վերադարձավ հայրենի գյուղ, արդեն գիտեր, որ իր կյանքը կապված է լինելու դպրոցի և երեխաների հետ:

Սկսեց առաջին դասարանից: Սիրով ու համբերատարությամբ իր սաներին սովորեցրեց հաշվել, գրել ու կարդալ, սիրեց բանակ:

Ցանկացած բաժանում իր հետ թախիծ է բերում, սակայն առավել հուզիչ էր բաժանումն աշակերտների հետ, որոնք փաթաթվել էին իրենց ուսուցչին ու արտասվում էին:

«Նրանց հետ ես էլ էի հուզվել և հազիվ էի զսպում արցունքներս», - հիշում է նվիրակ ուսուցչապետ Կարապետյանը:

Հետաքրքիրն այն է, որ նրա աշակերտները խորհրդային բանակում ծառայող իրենց ուսուցչին դեռևս անվարժ, բայց անկեղծ սիրով ու ջերմությամբ լի նամակներ էին գրում՝ սպասելով նրա վերադարձին:



1971 թ. , Կարապետյան գերդաստանը. ձախից աջ. դուստրերը՝ Կարինեն եւ Մարինեն, կինը՝ Ամալյան, մայրը՝ Քիշմիշը, Սարգիս Կարապետյանը, որդիները՝ Կարենը եւ Սամվելը:

ու սիրվեց: Միաժամանակ պատրաստվում էր բարձրագույն կրթություն ստանալ և ընդունվեց (1954 թ.) Երևանի Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի ֆիզմաթ ֆակուլտետը՝ հեռակա ուսուցմամբ:

Նույն տարվա հոկտեմբերին զորակոչվեց

Հայրենասեր երիտասարդի համար զինվորական կյանքը եղավ հոգու և մարմնի ներդաշնակ զարգացման ու կոփման մի նոր դարբնոց՝ ավելի հասուն հայացքով նայելու կյանքին ու ծրագրեր կազմելու:

➲4


Կարեն Կարապետյան


Սամվել Կարապետյան


Վահե Կարապետյան

ՅՇ

Հոգով ամրացած ու հասունացած վերադարձավ հայրենի գյուղ և 1957 թվից լծվեց մանկավարժական ծանր, բայց իր համար կոչում դարձած աշխատանքին՝ միաժամանակ շարունակելով ուսումը, ինքնազարգացմամբ հարստացնելով ու խորացնելով գիտելիքները:

Այդ տարիներին էր, որ նրանց ճանապարհները խաչվեցին. երիտասարդ ու հմայիչ Ամալյան օտար լեզու էր դասավանդում գյուղի դպրոցում...

Ստեղծվեց սիրով, ջերմությամբ, վստահությամբ լի մի ընտանիք: Չնայած դժվար էր երիտասարդ զույգի համար համատեղել աշխատանք, ուսում, ընտանիք, բայց նրանք հաղթահարեցին բոլոր դժվարությունները՝ միմյանց սատար լինելով, ոգևորելով ու հուսալով, մեծացրեցին չորս հրաշալի զավակներ (2 տղա և 2 աղջիկ), որոնք հիմա հարգված ու գնահատված անձնավորություններ են, հրաշալի ծնողներ, ունեն իսկական հայկական ընտանիք, տղաներն այժմ ճանաչված են ողջ հանրապետությունում ու նրա սահմաններից դուրս:

Հպարտ է երջանիկ հայրն իր զավակներով, և ինչո՞ւ հպարտ չլինի. ավագ որդին՝ Կարենը, ժողովրդի ընտրյալն է՝ ՀՀ Նախագահի աշխատակազմի ղեկավարը: Լուրջ, խոհուն, իր երկրի հոգսերով ապրող այր, ում աստվածահաճո ապրածն ու առօրյան ներառում են նաև բարեգործությունը՝ օգնությունն ու օժանդակությունը սատարումի կարիքն ունեցող առանձին մարդկանց, մանկատներին ու դպրոցներին...

Կրտսեր որդին՝ Սամվելը, հայտնի գործարար է, ապրում է Ռուսաստանի Դաշնությունում, սակայն հեռավորությունը չի խանգարում, որ այնտեղից էլ բարերար խորհրդով իր նպաստը բերի հայրենիքին ու օգնի հայրենակիցներին: Սամվել Կարապետյանի ղեկավարած «Տաշիր» ընկերությունը բազմիցս գնահատվել ու արժանացել է նաև Ռուսաստանի ղեկավարության ուշադրությանն ու խրախուսվել:

Կարապետյան եղբայրները հոգևոր արժեքները կարևորող ու նաև դրանց զարգացմանը նպաստող բարեգործ այրեր են: Նրանց հովանավորությամբ կառուցվեց Տաշիրի Սուրբ Սարգիս եկեղեցին, որ տարածաշրջանի ամենագեղեցիկ, խավարից դեպի լույսը տանող աստվածահաճո մի կառույց է:

Նրանցից հետ չի մնում նաև Սարգիս պապի թոռը՝ Կարենի ավագ որդին՝ Վահեն: Չնայած նրա երիտասարդ հասակին (25 տարեկան) Վահե Կարապետյանն արդեն հաջողակ գործարար է, բարեգործ, որի աստվածահաճո գործերից է նաև հայրենի գյուղում կառուցված Սուրբ Սարգիս մատուռը:

Սրանք սոսկ եկեղեցի ու մատուռ չեն, այլ անուն, պատմություն: Հուշարձանները դառնում են ժողովրդի հույսերի ու հույզերի, անանց երախտագիտության վավերագրերը, սերունդների արյան կանչը, հիշողությունը, իսկ ժողովրդի հիշողությունն ամենազոր է:

Կարապետյանների մասին կարելի է լսել. «Թող օրհնվի Ձեր ծնունդը, թող Աստծո Աջը Ձեզ հովանի լինի»:

Սարգիս Կարապետյան Ուսուցիչը ավարտեց իր ուսումը հայոց մանկավարժական Մայր բուհում...

Երբ նվիրումն էություն է, աշխատանքը՝ մասնագիտություն՝ ընտրված ողջ կյանքի համար, խոսքերն անզոր են պատմելու այդ անմնացորդ նվիրվածության, ազնվության և աշխատասիրության մասին: Համոզվածությունն առ այն, որ երկրի ապագան կոփվում է դպրոցում, աշխատեց խղճի մտոք, դարձավ իսկապես անդավաճան ուսուցիչ, մարդ, ում գոյությունն ու ներկայությունը վստահություն են ներշնչում, խաղաղության զգացում պարգևում:

...1965 թվին ստանձնեց հայրենի գյուղի դպրոցի տնօրինությունը, ստանձնեց պարտավորություն մեծ բեռով, ստանձնեց ու կարողացավ, հաղթեց, քանի որ նրան հավատացին ուսուցիչը, աշակերտը, ծնողը:

Բնությունից շռայլորեն օժտված, խիստ, բայց էությամբ բարի, կենսախինդ ու անաչառ. հատկանիշներ, որ Սարգիս Կարապետյանին դարձրին շրջապատի սիրելին: Ստեղծվեց համերաշխ, միմյանց ու դպրոցի հոգսերով ապրող ուսուցչական կոլեկտիվ, գնահատեց դիմացինին, ոգևորեց, նպատակաուղղեց: Դպրոցաշեն առաքելությամբ խանդավառեց և՛ ուսուցչին, և՛ աշակերտին, և՛ ծնողին՝ իմաստավորելով իր կյանքը:

Անսպառ աշխատասիրությունը, անաչառությունն ու նվիրումը բազմիցս գնահատել են ոչ միայն աշակերտներն ու ծնողները, այլև պետական ու հասարակական կազմակերպությունները: Պարգևատրվել է պատվոգրերով, շնորհակալագրերով, նաև՝ վարչապետի հուշամեդալով:

Ասում են, թե դպրոցներն էլ մարդկանց նման ունեն կենսագրություն: Մարդիկ են կերտում իրենց կենսագրությունը, իսկ դպրոցների կենսագրությունը կերտում են ուսուցիչներն ու ուսուցչապետերը: Դպրոցն էլ մեր տան, մեր օջախի պես է. սրտացավություն չի զգում՝ սպառվում է, ամենօրյա ուշադրության չի արժանանում՝ մաշվում է:

Սարգիս Կարապետյանի կենսագրությունը անքակտելիորեն կապված է դպրոցի հետ, միահյուսված: Միաժամանակ ինքն էլ կերտել է նաև դպրոցի կենսագրության իր բաժին հատվածը: Շուրջ 55 տարի ներշնչել ու ներշնչվել է այդտեղ և չնայած 2004 թվից անցել է վաստակած հանգստի, հիմա էլ ապրում է գյուղի և իր անունն ու ձեռքի դրոշմը կրող դպրոցի հոգսերով: Զավակների՝ Կարեն և Սամվել Կարապետյանների հովանավորությամբ և իր անմիջական հսկողությամբ վերանորոգվում, նոր փայլ ու շուք է ստանում դպրոցը, դառնում ավելի տրամադրող, ոգեշնչող ու հարմարավետ:

Սարգիս Կարապետյանը երբեք հանգիստ չի որոնել, նրա փոխարեն մեկ ուրիշը գուցե իրեն չծանրաբեռներ որևէ հոգսով և զբաղվեր միայն թոռներով ու ծոռներով, բայց նա անցել է կյանքի բոլոր արահետներով, ինքնահաստատվել և հիմա էլ իր պարտքն է համարում օգնել մյուսներին: Երբեք չի ներում սուտը, անազնիվ ու նենգ արարքը, ծուլությունը: Ապրում է արժանապատիվ, ուրախանում մանկան պես և ապրած օրերի կուտակած իմաստնությամբ կարևորում ու վերաբերվում կատարվածին ու կատարելիքին:

ՇՏ



**1995 թ., Լեռնահովիտի դպրոցի տնօրեն Սարգիս Կարապետյանը դպրոցի ուսուցիչների եւ աշակերտների հետ:**

4Ͽ

Շրջապատված իր զավակներով ու թոռներով՝ իր ծննդի մեջ այդքան կատարյալ, ուսումնագետ ու ուսումնասեր մանկավարժը իր սրբազան օջախի մեծն է, նահապետը, քանի որ նա գիտի՝ ինչ ասել է ՄԵԾ. չէ որ այդպես է դաստիարակել իր զավակներին՝ ապրել լիարժեք, արժանավայել կյանքով և արժանապատիվ ու հպարտ նայել աշխարհին...

*Արաքսյա ԲՈՒԼՂԱԴԱՐՅԱՆ,*
*Լեռնահովիտի դպրոցի փոխտնօրեն*

# ԲԱՐԵՐԱՐ ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ ՇՈՒՐՋ ԵՐԿՈՒ ՄԻԼԻՈՆ ԴՈԼԱՐ ՆՎԻՐԱՏՎՈՒԹՅԱՄԲ ԱՐՑԱԽԻ ՄԱՐՏՈՒՆԻ ՔԱՂԱՔՈՒՄ ԿԼՈՒԾՎԻ ԽՄԵԼՈՒ ՋՐԻ ՀԱՐՑԸ

«Հայաստան» համահայկական հիմնադրամի պատվո անդամ, «Տաշիր-Գրուպ» ընկերության նախագահի Սամվել Կարապետյանի նվիրաբերած միջոցներով, մինչև տարեվերջ կավարտվեն ԼՂՀ Մարտունի քաղաքի ջրամատակարարման 1-ին գոտու շինարարական աշխատանքները և քաղաքի բնակչության շուրջ երկու երրորդը կօգտվի ջրամատակարարման նոր համակարգից: Աշխատանքների 2-րդ և 3-րդ փուլերի ավարտին քաղաքն ամբողջությամբ կունենա բարելավված ջրամատակարարում:

Սա Արցախի ջրամատակարարման ոլորտում իրականացվող, թվով երկրորդ խոշոր ծրագիրն է, որ կյանքի է կոչվում մեծապես Սամվել Կարապետյանի և իր գլխավորած «Կարապետյան եղբայրներ» ընկերության նվիրատվությունների շնորհիվ: Առաջինը՝ Շուշի քաղաքի ջրամատակարարման ներքին ցանցի կառուցումն է, որն իրականացվում է Ռուսաստանի հայ բարերարների նվիրաբերած միջոցներով, որտեղ առյուծի բաժինը կազմում է Կարապետյանի կատարած շուրջ մեկ միլիոն դոլար նվիրատվությունը:

Հիշեցնենք, որ Հեռուստամարաթոնն 2008-ը գրանցեց Հիմնադրամի պատմության մեջ աննախադեպ ցուցանիշ՝ 35 միլիոն դոլար՝ շնորհիվ Սամվել Կարապետյանի 15 միլիոն դոլար նվիրատվության: Ստեփանակերտում այսօր արդեն կանգուն է Կարապետյանի նվերը արցախցիներին՝ հանրապետական հիվանդանոցը, որը հարդարման և կահավորման աշխատանքների ավարտից հետո կսպասարկի տարածաշրջանի բնակչությանը:

Երկու տարի շարունակ Մոսկվայում ՀՀ Նախագահի հրավերով տեղի ունեցող բարեգործական գալա-ճաշկերույթներին Սամվել Կարապետյանն ակտիվորեն մասնակցում է ոչ միայն որպես բարերար, այլ նաև որպես համահայկական համախմբումն ու Հիմնադրամի առաքելությունը բարձր գնահատող հայ գործարար մարդ, ով ջանք չի խնայում թե կազմակերպչական, թե ֆինանսական աջակցության առումներով իր նպաստը բերելու այս կարևորագույն միջոցառմանը: Ըստ արժանվույն գնահատելով Սամվել Կարապետյանի վաստակը Հիմնադրամի պատմության մեջ՝ Հիմնադրամի հոգաբարձուների խորհուրդը 2009 թ. նիստին նրան միաձայն հաստատեց նախագահության կազմում՝ որպես Ռուսաստանի Դաշնության ներկայացուցիչ: Նա հանդիսանում է նաև Հիմնադրամի պատվո անդամ՝ կոչում, որին արժանանում են մեկ միլիոն դոլար և ավելի նվիրատվություն կատարած բարերարները:

Հիմնադրամի գործադիր տնօրեն Արա Վարդանյանը համոզմունք է հայտնել. «Հիմնադրամի պատմության վերջին տարիներին Սամվել Կարապետյանն անուրանալի դերակատարում է ունեցել: Հայտնի է, որ նվիրատվությունների չափի առումով, վերջին երկու տարում Ռուսաստանն առաջատար է. այս փոփոխությունը մեծապես կապված է նաև Սամվել Կարապետյան բարերարի անվան հետ, ում վարքն օրինակելի է դարձել Ռուսաստանում ապրող բազմաթիվ հայ գործարարների համար»:

Սամվել Կարապետյանի գլխավորած «Կարապետյան եղբայրներ» ընկերությունը ներառում է ավելի քան երկու հարյուր գործարար կառույց, որտեղ աշխատում է շուրջ 30 հազար մարդ, որոնցից շատերը հայեր են: Նման խոշոր կառույցի ղեկավարումը կարող էր կլանել գործարար մարդու ողջ ժամանակը, բայց նրան հաջողվում է լինել և անգերազանցելի ձեռներեց, և ընտանիքի հոգատար հայր և հայրենիքի զարկերակը մշտապես զգացող մեծանուն հայորդի: Նրա հոգատարությունը զգացել են հազարավոր մարդիկ. այսօր դրանց թվին ավելացան նաև մարտունեցիները: Բարելավված ջրամատակարարում ստացած մարտունեցին անպայման կօրհնի իր բարերարին ու կմաղթի ջրի նման երկար կյանք:

***«Հայաստան» համահայկական հիմնադրամ***

# Բժշկուհի Սոնյա Առուշանյան

***Աշխատանքը իմ հոգու երջանկությունն է, քանի որ ունեմ առաքելությանս հստակ գիտակցումը:***

Առողջապահությունը երկրի քաղաքակրթության կարևոր ցուցանիշ է:

Եվ այդ բնագավառում կնոջ մասնակցությունը միշտ էլ ստեղծում է ներդաշնակություն, նրան վստահված գործում անվերապահորեն ապահովված է մեծ պատասխանատվությունը:

Իմ մեջ այս տպավորությունը ստեղծվեց Վանաձորի թիվ 4 պոլիկլինիկա այցելությանս առաջին իսկ րոպեներից և ամրապնդվեց որպես համոզմունք, երբ զրուցում էի Լոռու մարզի գլխավոր մանկաբույժ, հաստատության տնօրեն Սոնյա Առուշանյանի հետ:

Ո՞ր ճանապարհը մարդուս կտանի դեպի իր կոչման հանգրվանը, ո՞ր մասնագիտությունը երջանկություն կբերի քեզ ու քո օգնությանը սպասող մարդկանց:

Հաճախ հետևելով մոդային կամ պարզապես դիպլոմ ստանալու ակնկալիքով են շատերը բուհ ընդունվում: Սակայն գալիս է մի պահ, որ բնության պարգևած շնորհները հրաբուխի պես պոռթկում են, և մարդն արթնանում է կյանքի ու իր մասին այլ պատկերացումներով:

Զրույցի ժամանակ այս հարցն իր պարզաբանումը ստացավ: Յոթ-ութ տարեկան աղջնակը, երբ առաջին անգամ հանդիպել էր սպիտակ խալաթով իր բարի բժշկուհուն, նրա գիտակցության մեջ արդեն ծնվել ու հետո հասունացել էր մասնագիտության խնդիրը՝ անպայման մանկաբույժ, իր բժշկուհու նման բարի բժշկուհի:

1991 թ.-ին Սոնյան, ավարտելով Երևանի Պետական բժշկական ինստիտուտի մանկաբուժական ֆակուլտետը, դարձավ բժշկուհի, աստիճան առ աստիճան կայացավ՝ դառնալով ընդգծված անհատականություն: Իր կեսագրությամբ միաձուլվեց սիրելի քաղաքին՝ դառնալով այն նվիրյալներից մեկը, ով ապրած ժամանակի մեջ և այդ միջավայրում մինչև վերջ որպես առաջնային և ամենաբարձր արժեք կարողանում է պահել բժշկի բարձր կոչումը:

*- Սրտիս թելադրանքով եմ ընտրել մասնագիտությունս, իմ կյանքի ճանապարհը, և չեմ սխալվել, որովհետև ապրածս յուրաքանչյուր տարին ինձ համար դարձել է մի նոր աստիճան այդ դժվար ճանապարհին, և որը տանում է ինձ դեպի իմ հոգու երազած բարձունքները:*

Այո, չի սխալվել, քանզի ապրում ու աշխատում է առողջապահության մարտիկի լիարյուն կյանքով, առողջություն, ժպիտ ու բարություն սփռում ամենուր:

Բուժօգնության կարիք ունեցողի հետ աշխատանքը Սոնյա Առուշանյանի տարերքն է: Նման պահերին նա կարծես մոռանում է սեփական հոգսերը: Նվիրվում է մարդկանց, շարունակում է ցանել բարության, հոգատարության սերմեր, ինչու չէ կյանքի իմաստը տեսնելով և դրա մեջ:

*- Յուրաքանչյուր բուժօգնության կարիք ունեցող գիտակցաբար, թե ենթագիտակցաբար բժշկին է ներկայացնում որոշակի պահանջներ: Նա առաջին հերթին ուզում է*




*տեսնել բժշկի՝ օգնություն ցույց տալու նրա ներքին անկեղծ ցանկությունը: Եվ ոչ միայն նրա, այլև բուժանձնակազմի վերաբերմունքը, վարվելակերպը, հաստատության ընդհանուր մթնոլորտը:*

Բժշկուհու անկեղծությունը ինձ հիշեցրեց դեռ 16-րդ դարում Պարցելսիուսի արտահայտած հետևյալ միտքը. «Բուժման լավագույն միջոցը սերն է, բժշկի ուժը նրա սրտում է: Նրա աշխատանքը պետք է առաջնորդվի



Աստծով և լուսավորվի բնական լույսով ու փորձով»:

Չէ՞ որ բուժաշխատողը հիվանդության բարեհաջող ելքի, վստահության և ուժի խորհրդանիշն է:

Սկսած 1994 թ.-ից՝ ՄԱԿ-ի մանկական հիմնադրամի, ԱՄՆ ՄԶԳ կողմից ֆինանսավորվող ծրագրերի ազգային փորձագետ է ու դասախոս, 2006 թ.-ից ՀՀ առողջապահության նախարարության «Մանկական հիվանդությունների ինտեգրացված վարում» ազգային ծրագրերի ղեկավարը:

Տարբեր երկրների /ԱՄՆ, Շվեդիայի, Լիտվայի/ առաջատար բժշկագիտական, առողջապահության կազմակերպման կենտրոններում կատարելագործման բովով անցած բժշկուհին 2007 թ.-ից, լինելով Առողջապահության համաշխարհային կազմակերպության միջազգային փորձագետ, իր բազմազբաղ գործունեությամբ նպաստում է ոչ միայն մեր երկրի առողջապահության առաջընթացին, այլև իր հարուստ փորձը դասախոսությունների միջոցով մատուցում ԱՊՀ երկրների իր համագործակիցներին:

Հերթական հրավերը Կիրգիզիայի մայրաքաղաք Բիշկեկից է, ուր հայուհի մանկաբույժը տեղի մասնագետներից վերապատրաստելու և ձևավորելու է մանկաբույժ-դասախոսների ազգային թիմ: Այդ թիմն էլ իրականացնելու է իրենց երկրի երեխաներին տրամադրվող բուժօգնության օրինակելի մատուցման աշխատանքները:

Հետազոտությունները, մանկաբուժական ոլորտի կրթական նյութերի մշակումները, որ իրականացնում է Սոնյա Առուշանյանը, իրենց ուրույն տեղն ունեն ոչ միայն մեր երկրի, այլև արտասահմանյան հրապարակումներում:

*- Հիպոկրատին երդումը սոսկ խոսք չպիտի լինի, և որ մենք յուրաքանչյուրս մեր պատասխանատվության չափով պիտի կարողանանք բուժաշխատողի աշխատանքին նոր որակ ու նոր դիմագիծ հաղորդել:*

ՏԸ

Սրանք էլ սոսկ խոսքեր չեն: Բարեփոխումները հաստատուն արմատավորվում են Սոնյա Առուշանյանի ղեկավարած շուրջ 17 հազար բնակչի առողջության առաջնային պահպանման բուժծառայություն մատուցող հաստատությունում: Պրոֆեսիոնալ անձնակազմով անում են հնարավորինս ամեն ինչ, հավատ ներշնչում բնակչությանը, վստահեցնում նրանց, որ կստանան լիարժեք առաջնային բուժծառայություն:

Հաստատությունում ամեն քայլափոխի համոզվում ես, որ այստեղ առաջնորդողը «որտեղ աշխատես, գործին պետք է նվիրվես» նշանաբանն է: Եռանդուն ու բանիմաց մասնագետի ու իր անձնակազմի համար խորթ է «գործը մի կերպ յոլա տանելու» ուղին:

Պատահական չէ, որ 2003 թ.-ին Հայաստանի սոցիալական բարեփոխումների ծրագրով մեր պետության երեք փորձարարական վայրերից մեկը ընտրվեց Վանաձորի թիվ 4 պոլիկլինիկան, ուր պետք է սկիզբ դրվեր առողջության առաջնային պահպանման օղակի բարեփոխումները՝ ընտանեկան բժշկության համակարգի ներդրումը: 5 բժիշկներ և 11 բուժքույրեր ուսուցանվեցին ընտանեկան բժշկության ծրագրով:

Սոնյա Առուշանյանը բարի ու հմուտ լինելուց բացի, իր գիտելիքները հարըստացնող, մշտապես պրպտումների մեջ, նորը յուրացնող մասնագետ է:

Ճիշտ է ասված՝ «օգնություն պարգևող ձեռքերը աղոթող շուրթերից սուրբ են»:

Դրա վկայությունն այն ջերմագին սերն է, որ տածում են դեպի բժշկուհին, նրա ղեկավարած անձնակազմին երբևէ նրանց մոտ բուժօգնություն ստացած մարդիկ: Եվ, առհասարակ բժշկին գնահատում է նախ և առաջ ժողովուրդը:

Դիմանկարը ամբողջական չի լինի, եթե չընդգծվի, որ Սոնյա Առուշանյանը կնոջ այն տեսակն է, որ առաջին հերթին իրեն երջանիկ է զգում իր տանը, որ ամեն ինչից վեր մայրությունն է իր աշխարհը: Հպարտ է իր զավակներով: Դուստրը՝ Լուսինեն, ավարտել է Բրյուսովի անվան օտար լեզուների պետական ինստիտուտի լեզվաբանական ֆակուլտետը՝ քաղաքագետ-լեզվաբան մասնագիտությամբ, Եվրոպական տարածաշրջանային ակադեմիայի մագիստրատուրայի առողջապահության կառավարման ֆակուլտետը: Տղան՝ Նարեկը, ավարտելով Պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետը, այժմ իր սուրբ պարտքն է կատարում՝ ծառայելով Հայոց բանակում:

Ահա այսպես բժշկուհի Սոնյա Առուշանյանը տիեզերքի անսահմանության մեջ իրեն տված ակնթարթը, որ կյանք է կոչվում, փորձում է լցնել գործին նվիրվածությամբ, բարությամբ ու սիրով:

Եթե դա հաջողվում է, ուրեմն նա իրեն երջանիկ է զգում, երջանկություն, որ հասու չէ ընչասերին, քանի որ դա հոգու երջանկություն է:

**ԼԵւոՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ**

*Մարզաշխարհի մեր նախապետերը*

# Արժանավայել ապրած տարիներ

**Չգրված օրենքներից մեկն էլ գնահատելու համար առիթ փնտրելն է: Իսկ արժանավորը մշտական գնահատանքի է արժանի:**


Ղարագյոզյան եղբայրները. աջից առաջինը Ալբերտ Ղարագյոզյան


Ալբերտ Ղարագյոզյանը իր եղբայրների հետ Հայրենական Մեծ պատերազմում զոհվածների հուշարձանի մոտ

Խոսել Կիրովական-Վանաձոր քաղաքի մարզական հարուստ ու բեղմնավոր էջերի մասին ու շրջանցել մի անուն, նման է, թե ընթերցվելիք գիրքդ կարդաս առանց հերոսներից մեկի անունի: Խոսքս սպորտի մեծ երախտավորներից մեկի՝ Ալբերտ Ղարագյոզյանի մասին է, ով իր շնորհները կես դարից ավելի ընծայաբերել է հարազատ ոստանին, որդեգրվել նրա սպորտին, անմնացորդ ծառայել բնագավառի մասսայականացմանը:

թյունը, պատանեկությունը, ապրած կյանքը:

Տաղանդավոր մարզիկ էր սպորտի մի քանի ձևերից՝ 1946-47 թթ. բռնցքամարտի Հայաստանի չեմպիոն, սիրում էր և ֆուտբոլը, այդ ձևի հանրապետական մրցաշարերի բազմակի գավաթակիր ու մրցանակակիր էր: Իսկ ամենասիրած մարզաձևից՝ դահուկավազքից, 1950-1956 թթ. անփոփոխ առաջատարն ու հանրապետության հավաքականի անդամը, վերջին երեք տասնամյակների վետերանների առաջատարը:


Անձնական արխիվից իրեն հոգեհարազատ նկար՝ Կիրովականի ֆուտբոլի թիմը

Ալբերտ Ղարագյոզյանը արդեն բոլորել է 86 տարին, որը մարդիկ ծերություն են անվանում, բայց նա ծեր չէ, այլ պարզապես տարիքով հարստացած:

Ասված խոսք է, եթե կայացած կենսագրություն ունես՝ կարող ես հպարտությամբ ետ նայել: Տարիները, այո շատ բան մշուշել են, բայց անմոռաց են փոքրիկ գյուղաքաղաքը այլ բնագավառների նման սպորտային հզոր քաղաք Կիրովական դառնալու ժամանակները, որտեղ արարող հայրենակիցների հետ ինքն էլ անմոռաց նվիրվեց շնորհակալ գործի՝ մասնակիցը դառնալով սերունդների ֆիզիկական դաստիարակության պատասխանատու առաքելությանը:

Տարիների մշուշոտ վարագույրը մի կողմ տանելով, մեր առջև հառնում է Ալբերտ Ղարագյոզյանի անցած ճանապարհը՝ մանկու-

Ալբերտ Ղարագյոզյան մարդը երջանիկ է իրեն բաժին հասած ճակատագրով, որովհետև ընտրության հնարավորությունն իրեն է տրված եղել, ու ինքն էլ կերտել է այն: Երջանիկ է, քանզի այն ազնիվ վաստակից է ծնվել, որը նրա երկարամյա աշխատանքի խտացումն է: Երջանիկ է, որովհետև ԱՆՁՆագիրն է «մաքուր», չէ որ մարդու արարքներն ու արած գործերն են նրա անձնագիրը:

Առանձնահատուկ է Ալբերտ Ղարագյոզյանի վերաբերմունքը ընտանիքի, երեխաների, իր ընկերների նկատմամբ, որոնց սիրում է անսահման, ուրախանում նրանց հաջողություններով, փորձում իր բարի խորհուրդներով օգտակար լինել և նպաստել

ԸՑ

7➲

նրանց կայացմանը: Ու մի՞թե ավելի բաղձալին կա կյանքում, քան հավատարիմ մնալ ամենաբարդին՝ շիտակ ապրելու կամքին, նպատակ ու գործ միահյուսելով կյանքի իմաստալից բանաձևերին, տանտիրոջ իրավունքով գործունեություն իրականացնելով հայրենյաց ոստանում:

1956 թ.-ին արդեն կուտակված փորձով ու իմացությամբ, առաջնորդվելով՝ «իմացածը սերունդներին փոխանցել» սկզբունքով ու երբեք չդավաճանելով ինքն իրեն՝ շուրջ հինգ տասնամյակ անխոնջ իրեն նվիրեց մատաղ սերնդի մարմնակրթության գործին՝ դասավանդելով տեխնիկումներում, դպրոցներում, ղեկավարեց սպորտի պալատն ու ձմեռային ձևերի սպորտի դպրոցը:



Հայաստանի դահուկավազքի բազմակի չեմպիոն Ալբերտ Ղարագյոզյանը /1947 թ./

Էությամբ պրպտող, գործունյա Ալբերտ Ղարագյոզյանը իրեն դրական կողմերով դրսևորեց՝ լինելով քաղխորհրդի պատգամավոր: Նրա առաջ քաշած բազմաթիվ հարցերն ու հարցադրումները նպաստեցին հարազատ քաղաքի սպորտի զարգացմանը:

Ասում են՝ ոմանք ծնվում են մեծ, ոմանք հասնում են մեծության, ոմանց տրվում է մեծություն: Այո, նա հասել է մեծության և նրան մեկ անգամ ևս տրվեց մեծություն:

2002 թ.-ին բնագավառում արարած անգնահատելի գործի ու վաստակի համար Ալբերտ Ղարագյոզյանին շնորհվեց ֆիզկուլտուրայի և սպորտի վաստակավոր աշխատողի պատվավոր կոչում:

Ընկերոջս՝ վաստակաշատ լրագրող Հովհաննես Կարապետյանի արձակ գործերից մեկի հարցադրողական տողերը մտաբերեցի, որը երևի իր տեղն ունի և այս դիմանկարում. «...ինչպե՞ս է ապրել, ինչպե՞ս է անցել նախասահմանված իր ճամփան, օգտվել իր բաժին կյանքից: Շահե՞լ է, թ՞ե կորցրել...»:

Համենայն դեպս չի կորցրել: Եթե կայացած կենսագրություն ունես, արժանավայել ապրած տարիներ՝ կարող ես հպարտությամբ ետ նայել: Ահա Ղարագյոզյան մարդու գրավականը: Դա գալիս է նրա՝ բարոյականությանը վերաբերող իր արժեհամակարգին համապատասխան պատկերացումներից, չափորոշիչներից:

ԼԵՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ
Վանաձոր-Կալուգա

# ՀՅՈՒՐԸՆԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԻ ՀԱՂԹԱԹՈՒՂԹՆ Է



Հայոց ավանդական տոնածիսական մշակույթը մեզ է ավանդվել զգալի կորուստներով: Պատմական, հասարակական, քաղաքական տարբեր պատճառներով դուրս են մղվել որոշ տոներ, տարրալուծվել են այլ տոների ու ծիսակատարությունների մեջ կամ տոնվում են միայն ժողովրդի մի հատվածի կողմից: Մոռացված ավանդույթները, հայ ազգային խոհանոցը ճանաչելի դարձնելու և վերականգնելու համար օրերս «Հայ խոհարարական ավանդույթների զարգացման և պահպանման» հ/կ-ի և ԵՊՀ ուսանողների նախաձեռնությամբ կազմակերպվել էր «Հացը լեռներում» ցուցադրություն-համտեսը: Սա մի շատ կարևոր երևույթ է ազգային արմատներին դառնալու և մեր կորցրած շատ արժեքներ ինչ-որ չափով վերականգնելու համար: Գլոբալացման պայմաններում մենք շատ բան ենք կորցնում, բայց գոնե փոքր էլեմենտների շնորհիվ մեր ազգային դեմքը պարտավոր ենք պահպանել: Եթե համեմատենք հայկական առօրյա սնունդը թեկուզ 20-րդ դարի սկզբի հետ, այն շատ է փոխվել: Մարդիկ զարմանում են ու չեն հավատում, երբ ասում ես, որ Նոր տարվա հայկական ավանդական սեղանին ընդհանրապես մսից պատրաստված կերակուրներ չկային: Նոր սերնդին պետք է սովորեցնել հարգանք սննդի, հացի նկատմամբ: Մեր ժամանակ, եթե հայ մարդը գետնին հացի կտոր էր տեսնում, վերցնում, դնում էր պատուհանին կամ ծառի ճյուղին, հացը սրբություն էր, իսկ այսօր այն դադարել է այդպիսին լինելուց: Այսօր համաշխարհայնացման ու արդիականացման պայմաններում ավելի է ուժեղանում որոշ մշակութային, ազգային արժեքներ կենսական կիրառության վերադարձնելու անհրաժեշտությունը:

«Հայ խոհարարական ավանդույթների զարգացման և պահպանման» *հասարակական կազմակերպության նախագահ* ***Սեդրակ Մամուլյանը****, ով արդեն 30 տարի աշխատում է որպես «Արարատ հոլ» ռեստորանի գլխավոր խոհարար, արմատապես փոխում է հայ մշակութային իրականության մեջ ձևավորված կարծրատիպերը:*

*Հասարակական կազմակերպությունը Սեդրակ Մամուլյանը հիմնել է 2007 թ. մի քանի համախոհների հետ: Կազմակերպությունն արդեն երկար տարիներ զբաղվում է հայկական ավանդական ուտեստների վերհանմամբ ու մասսայականացմամբ: Այդ առումով կազմակերպում են բանահավաքչություն ՀՀ մարզերում, Արցախում, Ջավախքում: Անգամ ՀՀ սփյուռքի նախարարության աջակցությամբ բանահավաքչական աշխատանքներ են իրականացնում հայկական գաղթօջախներում: Աշխատանքներում ներգրավված են ոչ միայն խոհարարներ, այլև պատմաբաններ, ազգագրագետներ:*

***- Կազմակերպություն հիմնելու գաղափարը Ձե՞զ է պատկանում: Պատմեք խնդրեմ հիմնադրման սկզբնական գործընթացի մասին:***

- Գաղափարը երկար տարիների խմորումների արդյունք է: Մոտավորապես 10-15 տարի կար այս կազմակերպությունը ստեղծելու միտքը: Դրդապատճառները շատ-շատ են: Ամենակարևորն այն է, որ սին կարծիք էր շրջանառվում, թե հայկական խոհանոցն այնքան էլ հարուստ չէ, առատ չէ, մեր տեսականին քիչ է և բազմազան չէ: Եվ ցավալին այն էր, որ այդ շրջանառվող լուրերի մեծ մասը նույնիսկ հենց խոհարարներն էին արտահայտում, այսինքն՝ խոհանոցի ներկայացման անմիջական պատասխանատուները: Երբ ստեղծեցինք կազմակերպությունը, երբ հավաքվեցինք մեր համախոհներով, առաջացավ «ինչի՞ց սկսել» հարցը: Եվ մենք սկսեցինք մեր մարդկային ռեսուրսի գնահատմամբ, այսինքն՝ առաջինը ուզում էինք տեսնել, թե ինչի՞ ենք տիրապետում, այսինքն՝ մարդկային ի՞նչ ռեսուրս ունենք, ո՞վ է հայկական խոհանոցի կրողը:

Հայաստանում խոհարարությունը մի տեսակ երկրորդ պլան էր մղված: Ուտելն ընկալվում էր ուղղակի որպես քաղցը հագեցնելու միջոց: Բայց ուտելը ճաշակելն է, համույք զգալը: Խոհարարների մեծ մասն, իհարկե, օբյեկտիվ պատճառով, տրվելով պահանջարկին՝ միայն այնպիսի կերակրատեսակներ է պատրաստում կամ այնպիսի աշխատանք է անում, որը հեշտ է և շատ մատչելի: Բայց մեր խոհանոցը շատ բազմազան է, ու մեր կերակրատեսակները պատրաստման շատ բարդ եղանակներ ունեն: Դրա համար անցած տարի հայտարարեցինք ազգային կերակրատեսակների մրցույթ՝ երեք փուլով: Մասնակիցներ եղան, բավականին մեծ արձագանք ունեցավ: Դրան զուգահեռ, Երևանում

➲9

Տ՛Ը

խոհարարությամբ զբաղվող համարյա բոլոր ուսումնական կենտրոնների հետ սերտ հարաբերություններ հաստատեցինք: Մենք ստացանք պետական պատվեր՝ ուսումնարաններում՝ նախնական մասնագիտական կրթական համակարգի համար չափորոշիչներ գրելու, այսինքն՝ թե ի՛նչ ծրագրով ուսանողը պետք է սովորի, և նրանից ի՛նչ մասնագետ կարող է ստացվել: «Երկիր մեդիա» հեռուստաընկերության եթերում մեր կողմից հեռարձակվում է «Արարատյան խոհանոց» հաղորդաշարը, որ եթերում է յուրաքանչյուր օր՝ երեք անգամ, համապետական և արբանյակային հեռարձակմամբ: Հաղորդման միջոցով հայ խոհանոցի ավանդույթները վերադառնում են ժողովրդին՝ որպես հայկական մշակույթի կարևոր և բաղադրիչ տարր: Այս հաղորդման եթերում և նրա շնորհիվ մենք լուծում ենք բազմաթիվ մշակույթների շփման և փոխգործակցության խնդիրներ. հնարավորություն ենք տվել նաև Հայաստանի ազգային փոքրամասնություններին և հարևան ազգերին ներկայացնել ազգային խոհանոցն ու մշակույթը:

***- Զրուցենք ձեր կողմից արդեն ավանդական դարձած ցուցահանդես-փառատոների մասին:***

Արդեն հինգերորդ տարին է, որ Հայաստանի ամենաբազմազգ վայրերից մեկում՝ Լոռու Ախթալա քաղաքում, սեպտեմբեր ամսին անց է կացվում Խորովածի փառատոնը: Այն հասցրել է մեծ մասսայականություն վայելել և դեպի իրեն ձգել սփյուռքի և արտասահմանի բազմաթիվ ճանաչված հյուրերի:

Օրերս կազմակերպեցինք հայ տոնածիսական կերակրատեսակների ցուցահանդես-համտես: Մեզ դիմեցին ազգագրության ինստիտուտից ու համալսարանի պատմության ֆակուլտետի ազգագրության ամբիոնի երեք շրջանավարտներ: Մեծ շուքով կազմակերպեցինք այդ ցուցահանդես-համտեսը. 13 տաղավարներ էին՝ 13 տոնածիսական օրվա հետ կապված: Ներգրավվեցինք 10 ռեստորանների, և ամեն մեկը հոգաց այդ տաղավարի, ինչպես նաև պատրաստման ծախսերը: Ցուցադրվեցին գեղեցիկ ձևավորված հայկական ավանդական կերակրատեսակները: Մեզ օգնեցին պետական կառույցներից: Ներկա էին մշակույթի, էկոնոմիկայի նախարարությունների աշխատակիցներ: Այս միջոցառումը կարևոր էր նրանով, որ կարողացանք միավորել 10 ռեստորաններ և բազմաթիվ խոհարարների: Հաջորդը՝ ՀՀ-ում առաջին անգամ Սարդարապատում տեղի ունեցած Տոլմայի փառատոնն էր, որի արդյունքները գերազանցեցին սպասելիքները՝ մասնակիցների, հյուրերի և այլնի առումով: Կարելի է ասել՝ տոնը կայացել էր: Տոնի մասին կարող եք դիտել



հետևյալ կայքում. http://www.youtube.com/watch?v=khhyvLMue6Q

***- Ինչո՞վ է հայկական խոհանոցը տարբերվում այլ ազգերի խոհանոցներից: Որո՞նք են հայկական խոհանոցի առանձնահատկությունները:***

- Յուրաքանչյուր ազգային խոհանոց առանձնանում է տիպիկ բնաշխարհին յուրահատուկ կերակրատեսակներով: Այսինքն՝ ազգային խոհանոց, առանց բնակլիմայական պայմանները և աշխարհագրական դիրքը հաշվի առնելու՝ գոյություն չունի: Որ տարածաշրջանում որ ապրում է տվյալ ազգը, նրա օրգանիզմն արդեն ադապտացված է և՛ այդ բնակլիմայական պայմաններին, և՛ այդ տա-րածաշրջանում աճող բոլոր բույսերին: Մեր խոհանոցը շատ բազմազան է, քանի որ մեր բնաշխարհը կամ մեր կլիման շատ հարուստ է: Բնությունը մեզ պարգևել է շատ մեծ հնարավորություն՝ օգտվելու իր բարիքներից:

Մեր խոհանոցը նաև տարբերվում է նրանով, որ օգտագործվում են ջերմային մշակման բոլոր հնարավոր եղանակները՝ թե՛ 4 հիմնական եղանակները, թե՛ կոմբինացված եղանակները: Ոչ բոլոր ազգային խոհանոցներն են, որ ունեն կերակրատեսակներ, որոնց ժամանակ օգտագործվում են ջերմային մշակման կոմբինացված եղանակներ:



Օրինակ՝ խորովածը: Միայն մենք՝ հայերս ենք խորովածն ընկալում որպես ջերմային մշակման առանձին եղանակ՝ բաց կրակի վրա, քանզի մենք խորովում ենք միս, թռչնամիս, ձուկ, բանջարեղեն, միրգ և այլն: Խորոված ասելով՝ մենք չենք հասկանում կոնկրետ մի ինչ-որ բան, ինչպես բոլոր երկրներն են ընկալում: Օրինակ՝ ռուսներն ասում են «пойдем жарить шашлыки»՝ «Գնանք տապակենք խորոված»: Կամ, ասենք, թուրքերը քեբաբը և՛ տապակում են, և՛ խորովում:

Մենք ունենք դարավոր ջեռոց. թոնիրը մեր դարավոր ջեռոցն է:

Ինչ վերաբերում է կոմբինացված եղանակներին, մենք կերակրատեսակներ ունենք, որոնց մեջ մթերքը ենթարկվում է կրկնակի ջերմային մշակման, ասենք՝ տապակած և խաշած: Օրինակ՝ մսեղենը: Մենք մի շարք առաջին, ջրիկ կերակրատեսակներ ունենք, որոնց մեջ միսը օգտագործվում է և՛ խաշած, և՛ տապակած: Այսինքն՝ կրկնակի ջերմային մշակման է ենթարկվում:

***- Նշեցիք, որ խոհանոցի միջոցով կարելի է դատել տվյալ ժողովրդի մասին: Ի՞նչ է հայկական խոհանոցը հիմնականում «խոսում» հայ ժողովրդի պատմության և բնավորության մասին: Առհասարակ կարելի՞ է զուգահեռներ անցկացնել տվյալ ազգի խոհանոցի և պատմության, բնավորության գծերի միջև:***

- Միանշանակ, կարելի է, և մեր խոհանոցը հենց բնորոշ է մեր կենցաղին, մեր ապրելակերպին: Մեր ավանդական յուրաքանչյուր կերակրատեսակի մատուցման կամ պատրաստման ձևը ենթադրել է որոշակի ծիսական արարողակարգ՝ պար, երգ, բանաստեղծություն, կամ կրոնական, տոնական ինչ-որ հանգամանքներ է ենթադրել:

Սնվելը միայն քաղցը հագեցնելու միջոց չէ. սնվելը հաճույքի, շփվելու, զրույց տանելու, խրատական նշանակություն էլ է ունեցել: Այ, մեր կենացները, օրինակ, խրատական են: Մեր ժողովուրդն արդեն մի քիչ հեռացել է այդ օրենքներից: Դրա համար է, որ մենք սնվելն ընկալում ենք երբեմն որպես ուղղակի քաղցը հագեցնելու միջոց:

Եթե ուշադրություն դարձնենք ազգային խոհանոցներին (համաշխարհային մասշտաբով եմ ասում), որոնք ներկա պահին դոմինանտ վիճակում են, ապա կտեսնենք, որ առաջ է գնացել այն ազգերի խոհանոցը, որոնք մշակել են և՛ պատրաստելու, և՛ սնվելու մշակույթ: Սրանք զուգահեռ պետք է առաջ տարվեն, և մեկի բացակայության դեպքում մյուսն առաջ չի գնա, քանզի պատրաստողը պետք է պատրաստի սիրով և հոգով, սնվողը պետք է սնվի սիրով: Տեսեք՝ ինչ պատրաստման ձևեր ունեն, օրինակ, արևելյան խոհանոցներից չինական, ճապոնական, կորեական խոհանոցները, պատրաստելու ինչ հաճելի տեսարաններ են ցուցադրում: Կամ եվրոպականը:



Իսկ Հայաստանում բազմաթիվ կերակրատեսակներից այդպիսի արարողակարգ, որոշ չափով, պահպանվել է միայն խաշի պատրաստման ժամանակ:

***- Ինչո՞վ եք բացատրում այն, որ այդ արարողակարգերը չեն պահպանվել:***

- Սա առաջին հերթին խոհանոցի կրողների՝ խոհարարների բացթողումն է: Հենց այդ մտահոգությամբ էր, որ մենք կազմակերպություն ստեղծեցինք: Բայց, իհարկե, եղել են և՛ օբյեկտիվ, և՛ սուբյեկտիվ պատճառներ՝ մեր ազգի պատմության հետ կապված նաև: Մենք շատ ինտեգրվող ազգ ենք: Մեր մշակույթի բոլոր ձևերի նման՝ նաև մեր խոհարարական մշակույթն է արտահանվել: Մեր բոլոր հարևանները ոգեշնչվել են մեր խոհանոցից: Մեր խոհանոցի հիմքի վրա ունեցել են, զարգացրել են իրենց խոհանոցները, բայց մենք անհետևողական ենք: Դա նրանից է, որ խոհանոցի վրա, խոհարարի վրա, խոհարար մասնագիտության վրա աշխատանքն է պակասել:

***- Պարոն Մամուլյան, խաշը առանձնացրիք որպես ուտեստ, որի պատրաստման արարողակարգը քիչ թե շատ պահպանվել է: Ի՞նչ մեկ-երկու ուտեստ կարող եք առանձնացնել, որոնց պատրաստման և մատուցման արարողակարգը չի պահպանվել:***

- Հարիսայի ժամանակ արարողակարգ եղել է: Հնում հարիսայի պատրաստումը ընդունված է եղել որպես զոհամատուցման արարողություն:

Կամ՝ Սուրբ Խաչի ծիսական տոնակատարության ժամանակ ուլին թոնրի մեջ կախելը ուլին պատժելու միջոց է եղել. ուլը փաստ է հասցրել խաղողի այգիներին, և դրա համար ուլին պատժել են: Հետևաբար, դրա հետ միասին նաև երգ է եղել, պար է եղել և այլն:

Եթե Դուք հարցնեք բոլոր կերակրատեսակների արարողակարգերը, ես, իհարկե, չեմ տիրապետում այդ տեղեկատվությանը, բայց

Տ՛10

9➲

հույս ունեմ, որ կտիրապետեմ:

***- Կա տեսակետ, որ քամած մածունը և լավաշը խոսում են այն մասին, որ հայ ժողովուրդն իր պատմության ընթացքում պատերազմներ շատ է ունեցել, այսինքն՝ դրանք զինվորներին են տվել, քանի որ երկար պահպանվում են: Ճի՞շտ է:***

-Այո,այդպես է: Ենթադրվում է,որ խորոված ն էլ դաշտային կերակրատեսակների թվին է պատկանում: Ու դա էլ ինչ-որ կերպ պատերազմելու, արշավելու կամ ոչ տնային պայմաններում պատրաստելու հետևանք է:

Լավաշը, իրոք, երկար պահվում է: Բայց լավաշը միայն պատերազմի մասին չի խոսում: Երբ ձմեռ ժամանակ մեր լեռնային շրջաններում ճանապարհները փակվել են, լավաշի՝ երկար պահվելու հատկությունը շատ օգտակար է եղել: Միայն լավաշը չէ: Մեր ազգը մինչև հիմա էլ ձմեռվա համար պաշարում, տնտեսում է:

Իսկ զորքերի մասով կարող եմ ասել, որ Կիլիկյան դարաշրջանում զորքին լավաշ և տհալ էին տալիս: Տհալն էլ բնական պահածո է, փաստորեն, և տիպիկ հայկական կերակրատեսակ, բայց անունը, չգիտեմ ինչու, թուրքերեն է հնչում՝ ղավուրմա: Բայց թուրքը երբևիցե պահեստավորելու, տնտեսելու ոչ մի առիթ չի ունեցել, քանի որ քոչվոր է եղել, ու քանի որ ուրիշներն իրենք իրենց համար տնտեսել են. թուրքերն ուղղակի կարող են հարձակվել և տնտեսածը վերցնել:

Կամ՝ կոլոլակին քյուֆթա ասելը: Ծեծած մսի օգտագործումը բացառիկ հայկական երևույթ է. ուրիշ ոչ մի ազգ չի օգտագործում: Բայց մենք անունը էլի թուրքերեն ենք դրել՝ քյուֆթա:



Տեսեք՝ ղափամա անունն էլի ինչ-որ թուրքական հնչողություն ունի, բայց բնիկ, էթնիկ հայկական կերակրատեսակ է: Չեմ կարծում դարեր կամ հազարամյակներ առաջ երբևիցե որևէ թուրք դդում աճեցրած լինի:

Օտար հեղինակներն են նշում, որ ձավարեղենի նախնական մշակմամբ զբաղվել են բացառապես հայերը: Բայց այսօր մենք խանութներում ունենք «բլղուր թուրքական», «բլղուր ես իմ ինչ» և այլն, և այլն:

***- Կա՞ն ուտեստներ, որոնք հայերը վերցրել են այլ ազգերից:***

- Չեմ կարծում: Ասեմ՝ ինչու: Միգուցե նաև մեր այդ ինտեգրման պատճառով որևէ բան վերցրել ենք, բայց դա մեր խոհանոցի վրա էական նշանակություն չի ունեցել: Ավելին, ընդհակառակը, մեր խոհանոցով են ոգեշնչված մեր բոլոր հարևանները: Որպեսզի մերկապարանոց չհնչի, ես կարող եմ նշել աղբյուրները, որոնցից օգտվել եմ: Օրինակ՝ Վիլյամ Վասիլևիչ Պոխլյոբկինը, որը, չլինելով խոհարար (պատմաբան-միջազգայնագետ է), շատ մեծ աշխատություն ունի և պարզ ասում է, որ տարածաշրջանի խոհանոցի հիմքը հայկական խոհանոցն է, որ կավեղենի մեջ պատրաստվող բոլոր կերակրատեսակները ունեն հայկական ծագում, որ ձավարեղենի նախնական մշակմամբ զբաղվել են բացառապես հայերը՝ դրա բոլոր հետևանքներով:

Այ, տեսեք՝ արաբական ինչ-որ հիմքեր են ուզում գտնել թաբուլեի, իշլի քյուֆթայի մեջ: Եթե բլղուրը բացառիկ հայկական երևույթ է, բլղուրից պատրաստված կերակրատեսակները չեն կարող լինել արաբական, ուղղակի չեն կարող:

***- Այսինքն՝ թաբուլեն հայկակա՞ն է:***

- Միանշանակ, իհարկե: Ոչ միայն թաբուլեն: Ես 30 տարվա աշխատանքային փորձ ունեմ: Զավեշտը հասել է այնտեղ, որ յուրաքանչյուր նորույթի կամ մեր հին ավանդական կերակրատեսակի յուրաքանչյուր նոր մատուցման դեպքում անպայման բոլորը հարցնում են. «Սա որտեղի՞նն է», «Սա թուրքակա՞ն է», «Սա վրացակա՞ն է», «Սա ճապոնակա՞ն է»: Ոչ մեկի մտքով չի անցնում, որ սա հայկական է: Չգիտեմ՝ ինչու ենք այսքան փախչում մեր ինքնությունից:

Շատ մեծ ուսումնական կենտրոնի ղեկավար (անունը չեմ ուզում տալ), երբ հեռուստատեսությամբ ելույթ ունեցավ, լավաշի մասին ասաց. «Լավաշը մենք ուղղակի հորինել ենք, որ հեշտ, հարմար լինի ծոցում պահելու և մեզ հետապնդողներից փախչելու համար»: Եթե մենք ենք այդպես կարծում, ուրեմն մեզ ուղղակի էլ թշնամի պետք չէ: Ուրեմն «մենք լավաշը հորինել ենք, որ հեշտ փախչենք», թոնիրն էլ՝ «հեշտ շալակենք ու վազենք», թոնիրը, որ մեր հեթանոսական ժամանակաշրջանում երկրի վրա արևի խորհրդանիշն է եղել: Այսօր օգտագործում են և՛ վրացիները, և՛ ադրբեջանցիները:

Ավելին ասեմ, ես վերևում նշեցի, որ մենք համագործակցում ենք Ազգագրության ինստիտուտի հետ: Ազգագրության ինստիտուտի մասնագետը, որին հանձնարարված է ուտեստների մասով մեծ աշխատանքներ կատարել, ինձ ասում է. «Գիտե՞ք, հաստատված չէ, որ լավաշը հայկական ծագում ունի»: Ես նորից հղում արեցի Պոխլյոբկինին: Զարմանալի է, ուղղակի զավեշտ է: Ավելի շատ գործ է արել Պոխլյոբկինը, քան մեր բոլոր այդ մասնագետները, որոնք պատասխանատու են դրա համար: Մարդը հացի գոնե երկու տեսակի՝ լավաշի և մատնաքաշի ծագումը հստակ համարում է հայկական: Իսկ մեր մարդիկ, որոնք նաև պատասխանատվություն են վերցրել, որ դրա մասին ինչ-որ աշխատություններ պետք է անեն, ասում են. «Վիճելի է՝ լավաշը հայկակա՞ն է, թե՞ չէ»:



Տոլման էթնիկ հայկական կերակրատեսակ է: Այսօր Երևանում ազգային էթնիկ անվանմամբ ռեստորանների ճակատին գրված է «դոլմա»: Եթե մի տառը՝ «տ»-ն «դ» ենք դարձնում, դա հենց թուրքերի ուզածն է, որովհետև եթե ասո՛ւմ ես «դոլմա», դա նշանակում է «դլմըսի»՝ լցոնած: Երբևիցե լսե՞լ եք, որ մեր տատիկներն ասեն. «Գնանք տոլմա լցոնենք»: Տոլման մենք փաթաթում ենք: Երբ տոլմա ես ասում, նշանակում է, որ այդ կերակրատեսակը ծագել է տոլի բառից, իսկ տոլի հին ուրարտերենով նշանակել է խաղողի տերև:

Կոնկրետ նորաբաց «Կիլիկիա» ռեստորանում դրսի կողմից «դոլմա» է գրած: Ուղղակի զարմանալի է, չգիտես ով պետք է վերահսկի: Էթնիկ բնիկ կերակրատեսակ է: Ո՞նց կարող է կերակրատեսակն ուրիշից վերցված լինել, բայց այդպես մանրազնին պահպանված լինել մեր տատիկների, պապիկների հիշողության ու պատրաստման եղանակների մեջ: Բացառված է դա:

***- Դարերի ընթացքում պահպանված, փոխանցված ի՞նչ ուտեստներ ունենք, որոնք հիմա էլ նույն հաջողությամբ մեր սեղանին են:***

- Հիմա ես կարող եմ շատ կերակրատեսակներ թվարկել, բայց, ցավոք, այդ կերակրատեսակները Երևանի որևէ ռեստորանում չեք տեսնի: Ցավալիորեն, մեր ավանդական կերակրատեսակների մեծագույն մասը պահպանված է միայն գյուղերում և մեր տատիկների շնորհիվ:

Մենք այդ ուղղությամբ էլ ենք աշխատում: Մենք բանահավաքությամբ ենք զբաղվում. այցելում ենք գյուղեր, տնետուն ման ենք գալիս և հավաքում ենք: Այս գործով մենք նախնական որոշակի համաձայնության ենք եկել Մշակույթի նախարարության համապատասխան բաժնի հետ: Քանի որ մենք հասարակական կազմակերպություն ենք, մեր ֆինանսները չհերիքեցին: Հույս ունենք, որ կշարունակենք:

***- Հայաստանին սահմանակից երկրները հայկական ո՞ր ուտեստներն են ամենից շատ վերցնում և իրենց վերագրում:***

- Բոլոր ուտեստներն են վերցված: Կոնկրետ մի ուտեստի մասին պատմեմ, որը շրջանառվում է Մոսկվայում ու համարվում է «ադրբեջանական»: Մեր հայկական ավանդական արցախյան տապական մարդիկ վերցրել են, մի բաղադրիչ ավելացրել, անունը դրել «սաչքյաբաբ» և շրջանառում են Մոսկվայում: Մեր արցախյան տապական է՝ տապակած բանջարեղեններով գառի միս:

Կամ՝ շրջանառվող մեկ այլ կերակրատեսակ, որը համարվում է իբր թե «ադրբեջանական», փիթին է: Մեր էթնիկ կերակրատեսակներից է, կճուճի մեջ պատրաստված գառի մսով և սիսեռով կերակրատեսակ է: Պուտուկ բառից է, «պ»-ն «փ» է դարձել, և այժմ ադրբեջանցիներն իրենց են վերագրում: Նույն Պոխլյոբկինն է այս մասին նշում: Դուք փորձե՛ք, մեկին մոտեցեք և ասեք. «Փիթին ի՞նչ է, ո՞ր ազգի կերակրատեսակն է»: Բոլորը կասեն. «Ադրբեջանի: Ղազախում լավ տեղ կար, մենք այնտեղ կերել ենք»: Բոլորը դա են հիշում:

Ի դեպ, մի դեպք պատահեց ինձ դեռ հեռու անցյալում՝ 85 թ.: Երբ Կիևի ինստիտուտում մասնակցում էի որակավորման բարձրացման կուրսերի, որպես նոր կերակրատեսակ ներկայացվեց վրացական ազգային կերակուր՝ «խաշի»: Դասախոսն ինքը գիտեր, որ խաշը հայկական կերակրատեսակ է: Երբ մենք ընդվզեցինք, ինքն ասաց, որ «աշխարհում բոլորը գիտեն, որ խաշը հայկական է, բայց դուք չեք մտցրել ձեր ազգային կերակրատեսակների ցանկը»: Ես մինչև հի-

➲11

10⊃

մա փնտրում եմ, թե էդ որտեղ է այդ ցանկը, և ով պետք է մտցնի այդ ցանկը:

Բայց իրենք այստեղ էլ նույնը չեն կրկնել. իրենք էլի ավելացրել են մի շտրիխ, նյուանս. պատրաստվում է նույն տեսակ, բայց վրա-յից ավելացվում է կարագով սոխառած: Դուք Հայաստանում որևէ տեղ խաշի պատ-րաստման այդպիսի տեխնոլոգիա լսե՞լ եք, որ սոխառած լինի: Բայց իրենք սոխառած՝ են մտցրել և հետևից էլ ավելացրել են «ի» «խաշի», «грузинское национальное блюдо хаши»:

Նույն «կեցիների» մեջ պատրաստված կե-րակրատեսակները համարվում են վրա-ցական: Խեցին մի տառի փոփոխությամբ դարձել է «կեցի», դարձել է վրացական:

Այսօր վրացիները լավաշը շրջանառում են «լավաշի» ձևով: Եվ վրացիները ավելացնում են «ի»՝ «լավաշի», ու հաստ բոքոնը լավաշի տեղ անցնում է:

Թուրքերի այդ քեբաբի շարքերը, որոնք խորովածի շարքեր են, բոլորը հայկական ծագում ունեն: Ես թուրքական խոհանոցին այդքան ծանոթ չեմ: Իրենք ունեն բաստուրմա, ունեն այնպիսի կերակրատեսակներ, որոնք հարմար են քոչելու, արշավելու համար և այլն: Իսկ նստակյաց կյանքին բնորոշ ազգերին յուրահատուկ կերակրա-տեսակներ, բնականաբար, նրանք ավան-դական չեն ունենա: Միգուցե այս վերջին հազարամյակում ինչ-որ սովորել են, ունեն՝ խոհանոց, բայց էթնիկ կերակրատեսակներ՝ որպես այդպիսին, չունեն: Ի միջի այլոց ասեմ, որ խինկալին և այլ խմորամսային կերակրատեսակները բոլորը ուզբեկական ծագում ունեն:

Եվ նորմալ է, երբ մենք հիմա էլ վերցնենք և վերամշակենք: Ես մեր խոհարարներին, մեր կազմակերպության անդամներին միշտ հորդորում եմ, որ լավը, զարգացածը, ար-դիականը կարելի է վերցնել և տեղայնացնել:

Բայց չունենալը, զավթելը և իրենցը համա-րելը, իհարկե, մեզ ոչ մի տեղ չի տանի: Ես խոհանոցի մասին ունեցել եմ բանավեճ ադրբեջանցի ընդդիմախոսների հետ: Մարդիկ ուղղակի համարում են, որ մենք «ընդհանրապես խոհանոց չենք ունեցել», պարզ է՝ նաև «ազգ չենք եղել» իրենց կար-ծիքով: Բայց երբ մենք ինտերնետային թերթերի միջոցով բանավեճի մեջ մտանք, ես իրենց խորհուրդ տվեցի և հիմա էլ խորհուրդ կտամ, որ տարածաշրջանը, որտեղ իրենք հայտնվել են ոչ շատ վաղ անցյալում, այնպիսի հարուստ բնություն և այնքան շատ ավանդույթներ ունի, որ իրենք, փոխանակ աչք ցցեն հարևաններին, թող մի քիչ համբերեն և կոգեշնչվեն, և այդ տարածաշրջանի բնակլիմայական պայ-մանները իրենց էլ հնարավորություն կտան խոհանոց ունենալ: Մեր փորձը մեր «զենքն» է, թող գան, համտեսեն, սովորեն: Հյուրընկալությունը հայի հաղթաթուղթն է: Իսկ Երկիր մոլորակը պահպանելու հա-մար Բարությունն ու Սերը բոլոր ազգերի Տիեզերական սնունդը պետք է լինեն:

Բազմաթիվ օտարերկրյա ռեստորաննե-րում կան կերակրատեսակներ, որոնց հիմքը հայկական է: Եթե բարձր մշակույթ ունեցող ազգից օգտվում են մշակույթ ունեցող հա-րևանները, դա նորմալ է, ոչ մի արտառոց բան չկա: Ինչ-որ չափով մենք էլ ենք օգտվել ուրիշ ազգերից, բայց մենք ունեցել ենք մեր հիմքը և մեր ունեցածի վրա ենք ավելացրել: Այն գործընթացը, որն այսօր իրականացվում է «Հայ խոհարարական ավանդույթների զարգացման և պահպանման» հասարակա-կան կազմակերպության շնորհիվ և նրանց ուժերով, իրոք, արժանի է բարձր գնահատականի: Յուրաքանչյուր անց-կացվող փառատոնից հետո պարոն Մամուլյանին երախտագիտությամբ մո-տենում են տասնյակ սփյուռքահայեր և օտարերկրացիներ՝ խնդրանք-հրավերքով, որ մի գեղեցիկ օր հայկական համուհոտով ավանդական ուտեստները «մեկնեն արտասահման»: Այո, ժամանակն է, որ սփյուռքի գաղթօջախներում ևս սկսվի հայ խոհարարական ավանդույթների վերա-կանգնման այն հաղթարշավը, որը, հիրավի, նոր, թարմ շունչ կհաղորդի մեր ազգային ինքնության վառ ներկապնակին:

*Նաիրա ԽԱՌԱՏՅԱՆ*
*Երևան - Կալուգա*

## Ջանազան-զարմանազան

Ամեն ոք, ով թեկուզ մեկ անգամ եղել է պատկերասրահում, հիշում է իր զգացողու-թյունները, թե ինչպես է հոգեպես խաղաղ-վել: Գիտական վերջին հետազոտություն-ները հաստատել են, որ այդպես է: «Պարզվում է՝ գլուխգործոցներին նայելը կարող է փոխարինել թերապևտիկ սեանսներին, - վստահեցնում է Լոնդոնի նյարդակենսաբանության համալսարանա-կան քոլեջի պրոֆեսոր Սեմիր Զաքին: - Մենք պարզեցինք, որ համաշխարհային գեղանկարչության գլուխգործոցները հազվագյուտ ազդեցություն են գործում մարդու հոգու վրա: Այս եզրահանգմանը գիտնականները եկել են կամավորների վրա հաճելի փորձերի շարքից հետո: Նրանց խնդ-րել են հնարավորինս երկար կանգնել ու զմայլվել Սանդրո Բոտտիչելլիի «Վեներայի ծնունդը», Կլոդ Մոնեի «Գորտաման» և Ջոն Կոնստեբլի «Սոլսբերիի տաճարը» կտավներով: Այդ ընթացքում նրանց ուղե-ղը նկարել են: Սարքերը ցույց են տվել, որ կտավները դիտելիս, ինչպես սիրած մար-դու լուսանկարը նայելիս գլխուղեղի նույն հատվածներում ակտիվացում է տեղի ունենում: Գիտնականներն արձանագրել են նաև արյան մեջ դոֆամին հորմոնի արտանետում, իսկ այս հորմոնը պայմա-նավորում է բավականության և հաճելի զգացողությունների ապրումը: Այս ռեակ-ցիան առաջանում էր գործնականում ակն-թարթորեն: Նման վիճակ, գիտնականների պնդմամբ, մարդ վերապրում է սիրահարվա-ծության պահերին: Այդ պատճառով, եթե ցանկանում եք ազատվել վախից, ցավից ու պարզապես բարձրացնել տրամադրու-թյունը, անհրաժեշտ է հնարավորինս հաճախ զմայլվել գեղանկարչության գլուխգործոց-ներով:



Խելքն ու ջահելությունը պահպանելու հազ-վագյուտ միջոց է գտնվել: Գերոնտոլոգիայի և գերիատրիայի գերմանական ընկերության նախագահ Մանֆրեդ Գոգոլը խորհուրդ է տալիս խելքը և, համապատասխանաբար, ջահելությունը պահպանելու համար գրքեր ընթերցել: «Անհրաժեշտ է կարդալ հենց գրքեր, ընդսմին՝ այնպիսի գրքեր, որոնք հափշտակում են ու դրական հույզեր առա-ջացնում, - համարում է դոկտոր Գոգոլը: - Ընթերցելու ժամանակ նոր սինապսներ՝ նյարդային բջիջների ելունդների ու օր-գանիզմի մյուս բջիջների միջև շփման հա-տուկ գոտիների են ձևավորվում: Ուղեղի ակտիվությունը բարձրանում է, երբ գիրքը կլանում է ընթերցողին ու վառ հույզեր առաջ բերում, և նվազում է, երբ տեքստը հետա-քրքիր չէ: Որպեսզի ընթերցանությունն օգ-տակար լինի, միակ պայմանն այն է, որ չի կարելի աչքերը լարելը: Կարելի է կարդալ և էլեկտրոնային տարբերակով, գլխավորը հետաքրքիր գիրք և համապատասխան տա-ռատեսակ ընտրելն է:

# ՀՀ ԿԳ նախարարության «Ոսկե հուշամեդալ»՝ «Մաշտոց» հանդեսի գլխավոր խմբագրին

ՀՀ Սահմանադրության օրը ՀՀ կրթության և գիտության նախարարության աշխատա-կազմի ղեկավարի տեղակալ Արա Էդոյանը, ՀՀ գրականության և արվեստի թանգարանի տնօրեն, գրականագետ Կարո Վարդանյանը ԿԳ նախարարության «Ոսկե հուշամեդալ»-ը հանձնեցին կրթության ասպարեզի վաստա-կաշատ գործիչ, «Մաշտոց» հանդեսի գլխա-վոր խմբագիր Գագիկ Աթաբեկյանին:

ԿԳ նախարար Արմեն Աշոտյանի՝ պար-գևատրելու մասին հրամանում նշված է. «Կրթության համակարգում իրականացվող բարեփոխումների լուսաբանման, ժա-մանակակից արվեստի ու գիտական մտքի տարածման, համամարդկային ու ազգային արժեքների պահպանության, հասարակությանը պետական կրթամշա-կութային քաղաքականությանն իրազեկելու գործում ներդրած ավանդի համար «Մաշ-



տոց» հանդեսի գլխավոր խմբագիր Գագիկ Աթաբեկյանին պարգևատրել ՀՀ կրթության և գիտության նախարարության բարձրագույն պարգևով՝ «Ոսկե հուշամեդալով»:

*Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Հովհաննես ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# «Մի օր ավելի եմ ապրել»

Դու հարցնում ես, թե որտեղ պիտի հանգչես մահից հետո: Այնտեղ, ուր հանգչում են տակավին չծնվածները...

Համալսարանում հայտարարված գրական մրցույթին Միքայելը, տատանվելուց հետո, անսաց ընկերոջ՝ Իշխանի հորդորներին ու մի կարճ պատմվածք ներկայացրեց: Սիրո, խարդավանքի, «Լուսնի սոնատի», մի խուքով միլիոն անգամ ծեծված հեռացումի-մոռացումի մասին էր: Ինչպես ոչ հազվադեպ էր պատահում, տղան կորզել էր աղջկա խոստովանությունը՝ «իր կողմից սիրախաղ էր եղել», և հիմա, բաժանումից հետո, հիշողության մեջ թողել էր հեռացումից մնացած բարձրակրունկների կտկտոցը...

- Ի՞նչ պիտի փոխեին այդ բազմակետերը իմ կյանքում, - սա տղայի վերջին պատասխան չակնկալող հարցն էր, պատմվածքի ավարտը:

Մրցանակ չստացավ, բայց մնացին դասախոսների, համակուրսեցիների խորհուրդները. «Շարունակի՛ր գրել, ամենևին էլ վատ չի ստացվում»:

Չգրեց: Ավելի շուտ անվերջ հետաձգում էր, սպասելով, որ կգա հարմար ժամանակը: Հիմա, տարիներ անց, Միքայելը նորից ձեռքը գրիչ վերցրեց: Որոշել էր՝ թեման կլինի կյանքի ու մահվան խորհուրդը, սակայն առաջին նախադասության որոնումը տանջալիորեն երկարում էր:

- Մի օր էլ աչքդ բացում ես ու տեսնում՝ դու կաս, իսկ կյանքը՝ չկա...

Սկսեց ու նորից դադար տվեց: Կարծես վատ չէր: Բայց սա ոչ թէ սկիզբ, այլ ավելի շուտ ավարտ է՝ մտածեց...

Ջնջեց, սկսեց նորը:

- Այցհեյմերի հիվանդության դեպքում մարդու ինտելեկտը հասնում է զրոյականի...

Հիշեց այդ օրը զրուցարանում շոգից փախած անծանոթ տղամարդկանց խոսակցությունը.

- Արա՛, ամեն ինչ դառանք, է՛լ պլանքաշ, է՛լ ծխող, է՛լ խմող... էլ ինչ մնաց, որ ըլենքպրծնենք: Արա՛, բա վերևներում մի կարգին հայ չկա՞...

Սրտնեղողը 35-38 տարեկանի մոտ էր, մաշկը սև, բայց հաստատապես ոչ արևից:

- Կա: Բայց վերևներում նստածներն էլ իրենց ցավն ունեն, ու իմացիր՝ նրանց ցավն անբուժելի ա, - չսափրված դեմքով, բայց արդեն տեղը տեղին ճաղատացած տղամարդը չափեց ընկերոջը:

- Չէ, սա էլ ոչ թէ ստեղծագործություն, այլ քաղաքականություն է, - մի քանի հաստ գծով Միքայելը ոչինչ դարձրեց նաև այդ սկիզբը:

Ծխող չէր, բայց այդ պահին հաստատ մի ծխախոտը չէր խանգարի. «Ծխի մշուշից երևակայությունը երևի կարթնանա»՝ մտածեց...

- Տառապում եմ, որ ի՞նչ. - միտքն ընկավ անցյալ տարի ընկերոջ՝ Վահանի մի խոսքը. «Գուսան Ջիվանին ու Հրանտ Մաթևոսյանը սպառիչ գրել-ասել են: Դրանից հետո ամեն ինչ կրկնություն է: Արժե՞ այլևս գրիչ վերցնել...

Դեռ ոչինչ, եթե միայն գուսան Ջիվանին ու Հրանտ Մաթևոսյանը լինեին... Հապա մյուս մեծե՞րը, համաշխարհային դասականնե՞րը... Հիշեց արտասահմանյան գրականության դասախոսին, որին համալսարանում սիրում էին բոլորը: Երկրորդ կուրսում, «Իլիական» անցնելիս, գրատախտակին գրականության ծառ նկարեց՝ գագաթին Հոմերոսը: Մի փոքր ցած՝ ճյուղերին, տեղավորեց Շեքսպիրին, Գյոթեին, Բայրոնին... Հայ գրողներից մեկի մասին ուսանողների հարցմանն ի պատասխան՝ քմծիծաղով կավճով մի մեծ կետ դրեց ծառաբնի ներքևում՝ արմատներին մոտիկ...

Հիշեց ու գրիչը կամացուկ դրեց սեղանին՝ գրելն անիմաստ էր: Սակայն լռելն էլ բազմապատիկ դժվար էր: Լռելն անհնար է, քանի որ լռության լեզվով կարող է միայն Աստված խոսել: Փրկությունը, բոլոր դեպքերում, խոսելու, գրելու մեջ է: Միայն թե հարց է՝ ինչի՞ց սկսել, ինչպե՞ս սկսել: Երկար մտմտուքից հետո թուղթը մի կողմ հրեց ու դուրս եկավ մոտակա պուրակ՝ ցրվելու...

***

Պուրակը մյուսներից առանձնանում էր շատրվանների առատությամբ: Քանի՞սն էին: Չէր հաշվել: Ինչո՞ւ հաշվեր: Ժպիտով հիշեց ուսանողական տարիները: Երկրորդ կուրսում էին: Քննություններին նախապատրաստվելու համար հանրակացարան էր եկել Լևոնը:



- Ազատության պողոտայից մինչև հանրակացարան քանի՞ եզրաքար կա, - հայացքը պտտեցրեց սենյակ մտնելուց ու բարևելուց հետո:

Ոչ մեկս չգիտեինք...

Հաղթողի տեսքով ինչ-որ թիվ ասաց ու հետևեց երկրորդ հարցը.

-Իսկ քանի՞ էլեկտրասյուն: Համեմատաբար հեշտ հարց...

Չգիտեինք...

- Ոչ թե նայել, այլ տեսնել է պետք, - տնավարի, հպարտ մեկնվեց մահճակալին: - Անցնենք քննություններին...

- Մյուս անգամ շատրվաններն անպայման կհաշվեմ, - ինքն իրեն պարտավորեցրեց Միքայելն ու շտապեց դեպի ուռենու ստվերում դրված ազատ նստարանը:

Պուրակը նկարիչների հավաքատեղին էր, ինքնօրինակ պատկերասրահ: Նրանց երևակայական աշխարհը՝ Մեծ ու Փոքր Մասիսներ, նատյուրմորտներ, ձիեր, ծաղիկներ...

Ամռան շոգին ազատ նստարան գտնելը բարեբախտություն էր: Ու Միքայելը հազիվ էր տեղավորվել, երբ նստարանին մոտեցավ անորոշ տարիքի, բարեկազմ մի կին:

- Իմ աշխատատեղն է, - ներկայացավ, - երևի թույլ կտայի՞ք...

Մերժելու խնդիր, առավել ևս իրավունք, չկար:

Կինը նստարանի մոտ, եղևնու տակ մանրակրկիտ տեղադրեց նկարակալը, դասավորեց մատիտները, վրձինները, ներկերը:

Արտաքինից դժվար էր ենթադրել, թե արվեստի մարդ է: Մի փոքր անց հանեց ծխախոտն ու.

- Կրակայրիչ կունենա՞ք, - զննող հայացքն ուղղեց Միքայելին:

Միքայելի համար նկարակալի մոտ կանգնած կինն այլև նկարչուհի էր... Դժվար էր ասել, թե շատ գեղեցիկ է: Բայց ակնհայտ գրավչությունը Միքայելին անընդհատ ստիպում էր դժվարությամբ թաքցնել նրան ավելի ուշադիր նայելու ցանկությունը:

- Սովորույթը բնությունից հեռու չէ, բայց ոչ հազվադեպ այն կառավարում է մեզ, - կինը պայուսակից գծանկարներ հանելով,

➲20

# Կապան. Հնագույն մշակութային բնօրրանը

Բարեխառը կլիմա, հարուստ ընդերք, ջրեր, անտառներ, վարելահողեր, հրաշալի արոտավայրեր, պաշտպանական բնական միջոցներ ունեցող Կապանում մարդը բնակություն է հաստատել վաղնջական ժամանակներից: Կապանը հնագիտական տեսակետից ուսումնասիրված չէ (բացառություն են կազմում հնագետ Օնիկ Խնկիկյանի կողմից կատարված պեղումները), նյութական արժեքների մեծ մասը հայտնաբերվել է հողային շինարարական աշխատանքների ժամանակ: Բազմազան են հայտնաբերված նյութերը՝ քարեդարյան աշխատանքային գործիքներ, կավե կենցաղային և ծիսական անոթներ, բրոնզե արձանիկներ, զենքեր, զարդեր, կենդանակերպ անոթներ, տիեզերքի նախնական պատկերացումը ներկայացնող իրեր:

Մեզ հայտնի հնագույն բնակատեղին Շիկահողի Քըրկտոր կոչվող վայրն է, ուր հայտնաբերված քարե կացնիկը հնագետները (Պավել Ավետիսյան) վերագրում են մ. թ. ա. 7-6 հազարամյակներին, այսինքն նորքարեդարյան (նեոլիթ) ժամանակաշրջանին:

Հայկական լեռնաշխարհը պղնձի արդյունահանման վաղ կենտրոններից էր, և նման խոշոր կենտրոններ են գտնվել Կապանում: Որ Կապանը վաղ մետաղագործության կենտրոն է, վկայում են հայտնաբերված վաղ աստիճանի ձուլման կաղապարները: Պղնձի ու քարե դարի (էնեոլիթ) բնակատեղիներ են Ճակատենը (Իրիգիս) և Լեռնաձորը (Գեղեցուն արտ, Հարսնաջուր):

Մեր լեռնաշխարհում մ. թ. ա. 4-րդ հազարամյակից սկսվում է բրոնզի դարը: Բրոնզեդարյան մշակույթի կենտրոններ են Թեղուտը (Չերյոմուշկա), Շիկահողը, Շրվենանցը, Տանձավերը, Դավիթբեկը, Սյունիքը, Սիզնակը, Ներքին Հանդը:



*Արմինե ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

Ուշագրավ են Շիկահողում, Քաջարանում և Դավիթբեկում հայտնաբերված բրոնզե սակրերը (մ. թ. ա. 2-րդ հազ.-ի վերջ - 1-ին հազ.): Հետաքրքրականն այն է, որ դրանցից առաջինը հայտնաբերվել է հնագույն պղնձահանքի տարածքում, իսկ երկրորդը՝ Քաջարանի բաց հանքում: Տեղական պղնձից դրանց ձուլված լինելը կասկած չի հարուցում, որոշ առումներով նմանվում են լեռնաշխարհի տարբեր անկյուններում հայտնաբերված սակրերին, սակայն մնում են որպես տեղական կապանյան տարբերակ:



**Սակրեր մ.թ.ա. 2-րդ հազարմյակի վերջ, 1-ին հազարամյակի սկիզբ**

Կապանը սյունիքյան տեղական մշակութային օջախի մի մասն է, որը հնագույն ժամանակներից փոխհարաբերությունների մեջ է գտնվել Անդրկովկասի, Արցախի, իսկ մ. թ. ա. 8-7 դդ. նաև Թալիշյան և Իրանական մշակույթների հետ:

Հնագիտությունը վկայում է Կապանում մետաղամշակության, խեցեգործության, արհեստների զարգացման մասին, ցույց տալիս, որ տարածաշրջանում եղել է հողագործություն, անասնապահություն, այգեգործություն, նույնիսկ գինեգործություն: Իսկ բրուտագործությունն այստեղ այնպիսի զարգացման է հասել, որ արհեստի արտադրանքից վերածվել է արվեստի նմուշների:

Կապանի տարածքում հայտնաբերված բրոնզե արձանիկները, զարդերը, կավե կենդանակերպ և մարդակերպ խեցանոթները արվեստի յուրահատուկ նմուշներ են և վկայում են այն մասին, որ մեր տարածքը եղել է չափից դուրս ծիսականացված: Տարածված են եղել արեգակի, ցուլի, առյուծի, կյանքի ծառի (սոսի), մայր հողի, այծի, օձի, եղջերուի պաշտամունքը:

Մեր նախնիները բնության հետ ապրել են ներդաշնակ կյանքով, պաշտել են բնությունը, արևը, երկինքը, կյանքը, որոնք իրենց արտացոլումն են գտել հայտնաբերված գտածոների մեջ: Դրանք կենդանակերպ անոթներն են ցուլի, խոյի, եղջերուի, թռչունի տեսքով և անոթներ՝ զարդարված արևի, ջրի, կայծակի, օձի, լեռների, կենաց ծառի զարդանախշերով, պատկերված են ռեալիստորեն, սնամեջ իրան ունեն: Ի դեպ շրջակա տարածքների համեմատ Կապանում ավելի շատ են հայտնաբերվել կենդանակերպ անոթներ, որոնք, ինչպես և Հայաստանում է, ի հայտ են գալիս ուշ բրոնզի դարի սկզբնափուլերից և լայն տարածում են ստանում մ. թ. ա. 8-րդ դարից սկսած:

Յուրահատուկ է դիպվածով Թեղուտ հնավայրից հայտնաբերված մարդակերպ խեցանոթը (մ. թ. ա. 7-6 դդ.): Այն տոնածիսական սպասքի եզակի նմուշ է, օգտագործվել է ծիսական արարողությունների ժամանակ հեղման նպատակով: Նրա աչքերն ու շուրթերը ագուցված են, ունի նուրբ կզակ, բարակ պարանոց, որն իրանի վրա առնված է հնգաթև աստղի զարդանախշի մեջ: Խեցանոթի գլխի վրա նույնպես գծագրված է հնգաթև աստղ: Հնգաթև աստղը արևելյան հավատալիքներում տարբեր կերպ է մեկնաբանվում: Այն երկնքի աստվածության խորհրդանիշն է, ինչպես նաև խորհրդանշում է ուրախություն և երջանկություն:

Ուրախություն և երջանկություն, աշխարհիկ կյանքի հաճույք է արտահայտում անգնահատելի մի նմուշ: Դա գինու թասը ձեռքին տղամարդու կավե արձանիկն է: Պարզ երևում է, թե ինչպիսի բավականությամբ է նա տարածել ձեռքերը: Սովորաբար արձանիկները կապված են պտղաբերության և բեղմնավորման պաշտամունքի հետ, բայց այս դեպքում այն վկայում է նաև մեր տարածքում գինեգործության գոյության մասին:

Հարուստ է Կապանի ուշ բրոնզեդարյան մշակույթը: Այդ ժամանակաշրջանում վերջնական կատարելության են հասցվում նախնադարյան մարդու կրոնական և գաղափարական պատկերացումները: Բազմաթիվ նյութեր՝ ցուլի, եղջերուի, թռչ-



Ցուլ Շիկահող, մ.թ.ա. 7-6 րդ դարեր



Սկավառակ մ.թ.ա. 14-13-րդ դարեր



Արեգակի սկավառակով կախազարդ մ.թ.ա. 2-րդ հազարամյակի վերջ, 1-ին հազարամյակի սկիզբ

չունի, խոյի, օձի տեսքով խեցանոթները կապվում են երկրագործական-անասնապահական հավատալիքների հետ: Դատելով հայտնաբերված նյութերից, մեզ մոտ տարածված է եղել ցուլի և եղջերուի պաշտամունքը:

Եղջերուների արձանիկները վկայում են լուսատուների պաշտամունքը (դրանց հիանալի նմուշներ հայտնաբերված են Բաղաբուրջում և Շիկահողում): Եղջերուն հավանաբար նաև մայրության, պտղաբերության, առատության խորհրդանիշ է: Կարծիք կա, որ արուն որսորդության, էգը՝ գեղեցկության խորհրդանիշ է:

Ցուլը կապվում է լուսնի պաշտամունքի հետ՝ միաժամանակ դրսևորելով բեղմնավորման, ուժի, քաջող կենդանու խորհուրդը: Արվեստի գլուխգործոց է Շիկահողում հայտնաբերված ցուլի գլխով խեցանոթը (Շիկահող, մ. թ. ա. 7-6 դդ.), որը օգտագործվել է ծիսական արարողությունների ժամանակ: Այն պատրաստված է խնամքով մշակված կավից, իրենից ներկայացնում է սնամեջ օղակով անոթ, ունի երեք ոտք, երեք բերան, որոնցից մեկը ոճավորված է ցլի գլխով: Իրանն ամբողջությամբ զարդանախշված է: Սակավաջուր Հայաստանում ջրի պաշտամունքը ունեցել է հսկայական նշանակություն: Տվյալ դեպքում ցուլը խորհրդանշում է ջրի պաշտամունքը: Իզուր չէ, որ որպես ծորակ ընտրվել է ցուլի գլուխը, որի բերանից երկնային ջուրը պետք է հոսեր երկրի վրա: Ցուլի և մյուս ծորակների առաջամասերը զարդարված են կենաց ծառի պատկերով:

Կենաց ծառի մասին. Հայոց հեթանոսական մշակույթում կարևոր դեր ուներ կյանքի ծառը՝ սոսին, որը սուրբ ծառ է համարվել: Այս ծառի օգնությամբ քրմերը գուշակություններ են արել: Սոսին, որի հնագույն անտառներից մեկը մեր կողմերում է, բազմիցս ներկայացվել է կապանյան բրոնզեդարյան մշակույթում:

Արեգակի պաշտամունքը եղել է հնագույն և կարևորագույն պաշտամունքներից մեկը, որի հիմքում ընկած է կյանքի հավերժության, հարություն առնելու գաղափարը: Արեգակը պատկերված է տարբեր խեցանոթների վրա, քունքազարդերին, ճակատակալներին և այլն:

Սքանչելի գործեր են զույգ արեգակի սկավառակով կախազարդերը, (մ. թ. ա. 2-րդ հազ.-ի վերջ-1-ին հազ. սկիզբ), որոնք կապված են արևի պաշտամունքի հետ: Սկավառակների միջև արված է գեղեցիկ հասկանախշ, որը կապված է բնության զարթոնքի, բերրի ամռան գաղափարի հետ:

Կապանում գտնված որոշ նյութեր ցույց են տալիս, որ մեր նախնիները որոշակի պատկերացումներ ունեին երկնային մարմինների մասին: Դրա վառ օրինակն է կետազարդ եռանկյունիներով նախշազարդված բրոնզե թիթեղյա սկավառակը՝ քունքազարդը (մ. թ. ա. 14-13 դդ.): Թվում է, թե մեր նախնիները տիրապետել են տիեզերքի արևակենտրոն գաղափարին, եթե հաշվի առնենք, որ քունքազարդի կենտրոնում պատկերված է արեգակը՝ շրջապատված մոլորակներով և լուսատուներով:

Քանդակագործական արվեստի եզակի նմուշ է Կապանի Սիզնակ գյուղում 1944 թ.-ին հայտնաբերված, Գորիսի երկրագիտական թանգարանում պահպանվող առյուծի բրոնզե արձանիկը: Առյուծի թաթը վնասված է, կշռում է 5 կիլոգրամ, ունի 20,5 սմ երկարություն, 7,5 սմ լայնություն, 13 սմ բարձրություն: Որպես հումք անկասկած օգտագործվել է կապանյան պղինձը: Վկայություն կա այն մասին, որ Սիզնակից ոչ թե մեկ, այլ առյուծի երկու արձանիկ է հայտնաբերվել: Մյուսը լուրերի համաձայն տարվել է Ռուսաստան: Արձանիկները թվագրվում են մ. թ. ա 8-7 դդ., այսինքն վերաբերում են Վանի թագավորության ժամանակաշրջանին և մի վառ վկայություն է, որ Կապանը ընդգրկված է եղել Վանի թագավորության տնտեսական և մշակութային կյանքի ոլորտում:

Առյուծի պաշտամունքը պատահական լինել չէր կարող. «Որպես ուղեկից կենդանի, շատ հաճախ արևի հետ հանդես է գալիս նաև առյուծը: Հայտնաբերված հնագիտական նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ արև-առյուծ կապը շատ ուժեղ է արտահայտված» (Անժելա Տերյան, «ԱՐ աստծո պաշտամունքը Հայաստանում», Երևան 1995, էջ ):

Իսկ Ռ. Իշխանյանը նկատել է. «Առյուծն առհասարակ կարևոր տեղ է ունեցել Արարատի թագավորության արվեստում: Առյուծն Հայկ աստծո խորհրդանիշներից մեկն էր: Պալատների պատերին հաճախ առյուծ էին նկարում» («Պատկերազարդ պատմություն հայոց», էջ 110):

Պաշտամունքային նյութերից բացի արժե ներկայացնել մի հետաքրքիր գտածո, որը ցույց է տալիս, որ մեր նախնիները զբաղվել են ձիաբուծությամբ, գործ են ունեցել ձիու հետ: Դա երկաթի տարածման շրջանում պատրաստված բրոնզե սանձն է (Թեղուտ, մ.թ.ա. 7-6 դդ.), որի նմանները հայտնաբերված են նաև Արցախում և Վրաստանում: Դրանք կապված են Հին արևելյան սանձերի տիպին: Սանձը պատրաստված է մեծ վարպետությամբ, կազմված է երկմաս երախճաններից, որոնցից մեկի ծայրը կոտրված է:

Կապանում բազմազան են հայտնաբերված նյութերը՝ զենքեր (դաշույն, թուր, կրծքազրահ, նետասլաք, տեգի ծայրակալ), մագիկ նշանակության իրեր



Խեցանոթ (Շիկահող, մ. թ. ա. 7-6 դդ.)



Բրոնզե սանձ



Բրոնզե արձանիկ

(հմայիլ, զանգուլակ, կախիկ), զարդեր (ճակատակալ(դիադեմա), կախազարդ, ճարմանդ, ուլունքներ, ապարանջան, մատանի, ականջօղեր, մանյակ), գոտիներ, կոճակներ, ասեղներ, գամեր, կոշկաձև անոթներ և այլն, որոնք ցույց են տալիս մշակույթի բարձր զարգացումը մեր տարածքում:

Կապանը հնագիտական առումով ուսումնասիրված չէ, և կուտակված շատ հարցերի պատասխաններ կարող են տալ միայն հնագիտական պեղումները:

***ԱՐՄԻՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ***

*Մեր երիտասարդ ստեղծագործողները*

# ՀՐԱՅՐ ՀԱԿՈԲՅԱՆ



**Երիտասարդ բանաստեղծ, որ օրվա մեջ իր խոհերին է տրվում, երբ ասելիքը թակում է մուսայի դռները, երբ աղմկում են հոգու հույզերը: Միերի տրամադրության հետ զրուցող ապրումները սպիտակ թղթի վրա դառնում են գեղեցիկ մեկնաբանություններ, որոնք նույնքան հուզական են, որքան պարզ ու անկեղծ:**

**Մեր ընթերցողին ենք ներկայացնում երիտասարդ ստեղծագործողի բանաստեղծական ներշնչանքից ծնված տողեր, հույսով, որ այդ տողերը հոգեհարազատ կլինեն շատերիս համար:**

## ԵՂԵՌՆԱԿԱՆ

Իմ երկիրը տաք արգանդ է ծոեր բերող աղեղնածին,
Որ քարբազուկ իրենց ճկմամբ սահվորիկ են չարին կոչում,
Եվ թշնամաց աչքն են փորում պինդ թռչումով անգղացին,-
Իրենց տունը զմուռսի պես փաթաթելով ճարի ծոցում:

Մենք սորում ենք խաչով բացվող ճամփաներում կանթեղածիր,
Հենց նույն տեղում, որտեղ մի օր մեր երազի այգը վիժեց,
Բայց մեր ոգին արնոտ աչքով չհորդորեց.«ԸՆ-ՏԵ-ԼԱ-ՑԻ՜Ր»,
Այլ վրեժի անչափումն լեռնանցքներով գահավիժեց:

Վահ ու Ագնի քաջերը մեր դաչաղ դարձան Քուռկիկածի,
Եվ երդվեցին խոսքով ցվերջ տուն-առագաստն այնքան լքել,
Մինչև թուրքի անգույն արյամբ չըզգենա Թուր Կեծակին՝
Լուռ թոցնելով չոր գլուխը կեղտոտ վզից թուրք իծակի:

Այնժամ չկար կենտրոնախույս այստեղացի-այնտեղացի.
Մեր բռունցքը երկաթացավ հնգամատնիք գավառներից,
Եվ փակ մնաց կոպերի տակ մեր երազը աստեղածին,
Երբ մատաղը աղով մռռաց արյունլվա հայ գառների:

Եվ երկարեց մեր որակը վերին տենչով բաղեղնածիգ,
Մի հրաշքով էլ ավելի տարացրվեց նոր վառվելիս,
Ես՝ իմ երկրի հայրն ու որդին և խոնարհը,-հա՛ր գյուղացի
Նոր վրեժի շունչ եմ պոկում անշնչացնող իմ բերանից:

## ԱՄՐԱՑՈՂ ԲՌՈՒՆՑՔ

Դու ՀԱՅԱՍՏԱՆՆ ես, ես ՀԱՅԱՍՏԱՆՆ եմ, նա՝ ՀԱՅԱՍՏԱՆԸ,
Մեր բջիջները մտապահում են հուշը պատմության,
Լույսը հայության: Եվ բավական չէ մի՞թե այսքանը,
Որ վեր խոյանանք մեր հին ժայռի պես ու հին թարմությամբ:

Երբ քնած մարդկանց կոպերի խորքում երազն էր նեխում,
Մասիսի նման մենք էլ ճեղքվեցինք երկխոց սյուների,
Եվ պատմությունը մեզ կռունկ կոչեց, երկու կիսատ բույն,
Ու մեզ դաջեցին քարտեզի վրա անտունիների:

Մեր երակների արյունը ծնեց կարոտի երանգ,
Ու մեր աչքերի կապույտը փոխվեց սև արևների,
Վերից ընծայված հրաշք մանանան առանձին կերանք,
Եվ տարբեր բառեր մենք մրմնջացինք լուռ բարևելիս:

Մեր նախնիները կեռ յաթաղանից փրկված հուշեր են,
Պատմություններ են մեր սիրտը պահող մոլորակների,
Էլ ինչպես փորձենք խառնել ավիշը մեր տաք հուների,
Հեթանոսի պես զի չենք երկնչում բազմաստվածներից:

Տուր ձեռքդ, ԸՆԿԵՐ, ոչ թե անտարբեր անցիր իմ կողքով,
Եվ ոչինչ, եթե կյանքի կրակում խորովվում ենք դեռ,
Պարզապես հիշիր՝ պիտի զորանանք թշնամու «մեղքով»,
Եվ մեր երկրում էլ սուրբ միասնության լույսեր կպայթեն:

## ԱՐԵՎԱՅՐՈՒՄ

Մեր ծառ-ձեռքերում կարմիր կարոտը ճաքեց նռան պես,
Եվ մեզ տվեցին բյուր թափառումի հուշի պուրակներ,
Մի երազգող բարձրաձայն գոչեց.«Կլինի՛ այսպես.
Դուք ձեր կոպերով կարող եք սանձել միայն կրակներ»:

Հազար հեքիաթի միջով դուք կանցնեք ոսկե կառքերով,
Եվ ձեր խորքերում երկու նժույգներ կճախրեն վայրագ,
Հույզի զարյուղով Նա կսոսափի իր տաք ձեռքերով,
Նա կրակներից ձեռքով կհանի բառերը այրված:

Բյուր հեքիաթներում կապրեք ձեր կերտած մոմե դղյակում,
Ու բոլորեքյան կհամովանա արևը կանաչ,
Երգի կփոխվի շուրթով մաքրված ամեն մի աղմուկ,
Եվ բառ կհառնի սրտի ոսպնյակով շտկվող հառաչը:

Ու ժամացույցի նետերը երկու իրար կփարվեն՝
Երազի բարձին թողնելով երկու փետուրներ միայն,
Սրտի պատերին լուռ կքարանան երկու նկարներ,
Երկու զույգ աչքեր կապույտ թռիչքով կպահեն իրար:

## ԾԻԾԱՂԻ ՈՐՍՈՐԴԸ

Տերևաթափ է պարում աշունը,
Խնջույք էր, որ ծնվեց մեջգիշերին:
Ներսում ոռնում է սպասման շունը,
Անունդ լողում է իմ շուրթերին:

Հայացքս բեկվում է նիզակաճոճ,
Երբ հույսս բախվում է շնահաչին,
Կյանքի երախում աչքս քո տունն էր,
Եռք էր քո ձայնը իմ ականջին:

Աշնանածառը քամու ափերից
Մերկապարելով հանդերձը նետեց,
Արևոտ օրվա շողեծափերից,-
Երազիս պատից անունդ սահեց:

Իր ոսկեգահից կախվել է արփին,
Թևերով փարվել ականափեշերից,
Խոհածափ օրվա ավազոտ ափին
Դու ինձ կտեսնես ծիծաղ որսալիս:

**Հրայր Մարտունի Հակոբյան:** Ծնվել է 1984 թվականին, Երևանում: 2001 թվականին ավարտել է Վանաձորի թիվ 20 դպրոց-վարժարանը: 2006 թվականին ավարտել է ՎՊՄԻ-ի բանասիրական ֆակուլտետի հայկական բաժինը: 2007-2009 թթ. ծառայել է Հայոց բանակում / Հադրութի շրջանի Ֆիզուլի քաղաքում/: 2009 թվականից Հայաստանի ժուռնալիստների միության անդամ է: 2002 թվականից աշխատել է Վանաձորի «Իմտերկապ» և «Լոռի» հեռուստառադիոընկերություններում՝ որպես հաղորդավար-լրագրող: Տպագրվել է տեղական և հանրապետական թերթերում ու պարբերականներում: Տարբեր տարիներին լույս տեսած գրական ալմանախներում տեղ են գտել նաև նրա բանաստեղծությունները («Բառ և հույս», «Գրական Լոռի», «Երիտասարդ Լոռի», «Գրական ՎՊՄԻ», «Նոր Դար», «Մաշտոց», «Երկունք», «Ազդարար», «Հասկ», «Ապագա մանկավարժ»): Այժմ աշխատում է «Լոռի» հեռուստառադիոընկերությունում և «Մաշտոց» գիտակրթական հանդեսի խմբագրակազմում:

*Էջը կազմեց Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆԸ*

# Մարկ Արյանի հայտնի անհայտ պատմությունը...

1968 թվական, Երևան: Սարի թաղ թաղամաս: Տան կտուրից երեք երեխա ձեռքից ձեռք խլելով հեռադիտակը, նայում են բարձրունքից երևացող Հանրապետական մարզադաշտի իրարանցմանը: Այսօր ֆուտբոլի օր չէ, բայց զարմանալիորեն շատ մարդ կա: Սովորաբար ֆուտբոլի օրերին կանգնում է նաև անտառատակի սարալանջով անցնող բեռնատար գնացքը և այս բարձրունքից գնացքավարները հետևում են խաղին: Այսօր առաջին անգամ մարզադաշտը հյուրընկալելու է երգչի: Բազմահազար ամբոխի ձայնին սովոր մարզադաշտը այսօր լսելու է միայն մեկ ձայն: Երգելու է Մարկ Արյանը:



## ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԱՐԳԱՐՅԱՆԸ ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻ ՄԱՍԻՆ

Արդ խոսվում է սփյուռքի ու հայրենիքի կապի, միացյալ ազգի ու մշակույթի մասին: Հեռուստատեսությունը և մամուլը լցված են բազմաթիվ կոչերով և մտքերով համայն հայության և հայրենիքի համար: Բազմաթիվ գիտական սեմինարներ պատմում են սփյուռքի պատմության և սփյուռքի առկա խնդիրների մասին: Ավաղ, նրա մասին կարող են պատմել միայն այն սերունդները, որոնք ծնվելով օտարության մեջ, սնվելով հեռավոր ու կորսված հայրենիքի երազանքով, ստանալով ծնողներից ժառանգություն միայն լեզու ու ազգություն, պետք է խորտակեին այն անտեսույթ պատերը, որոնք դրված էին երազած ու կորսված հայրենիքից մի փոքր կտոր մնացած հույսի ու լույսի շուրջ: Նրանք պետք է կռվեին իրենց ազգության նկատմամբ հարգանքի, դիրքի ու ճանաչման համար օտար հողում, թողնելով այն իրենց հետնից որպես ժառանգություն: Նրանք պետք է պահեին իրենց մայրական լեզուն, երգելով հայրենիքի մասին երգը: Ես, հեղինակս, ապրելով սփյուռքում և լինելով օգտվող սերունդը նրանց թողած ժառանգության, չէի կարող չփնտրել ժառանգության աղբյուրները:

## ԵՍ ՕԳՏՎՈՒՄ ԵՄ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԻՑ

Արդեն երկար ժամանակ է ինչ Եվրոպայում իմ ազգանունը ինձ տալիս է բավական կոմֆորտ գործերս առաջ տալու համար: Կարծո՞ւմ եք ազգությունն է: Հնարավոր է, բայց այս դեպքում ոչ: Ֆրանսիայում շատ Մարկարյաններ կան: Ես գիտեմ դա ինչն է, Մարկ Արյան ազգանունն է, սակայն...

Զանգում եմ գործով.

- Բարև ձեզ, խնդրում եմ գրանցել ինձ շրջանի գործատուների հետ հանդիպմանը:

- Ցավում եմ պարոն, բայց ուշացել եք, տեղերը սպառված են, կզանգահարեք երկու ամսից, - մեքենայի պես կրկնում է հեռախոսավարուհին:

- Սպասեք, սպասեք, հնարավոր է միգուցե վերջին րոպեին տեղեր ազատվեն և...

- Չգիտեմ, չեմ կարծում, սպասողների ցուցակը երկար է, սակայն եթե պնդում եք, թողեք ձեր տվյալները:

- Գրեք, Հովհաննես Մարգարյան:

- Ներեցեք չհասկացա, Մարկ Արյա՞ն, - մեխանիկականից մարդկայինի վերափոխվելով հարցնում է ձայնը:

- Հենց այդպես, - ասում եմ ես, որպիսի նորից տառ առ տառ չկրկնեմ ֆրանսիացիների համար դժվար իմ անունը:

Մի պահ լռություն է տիրում, հետո ձայնը, որն արդեն ամբողջությամբ մարդկայինի էր նմանվել, ինձ ասում է, «ապա սպասեք, հնարավոր է մեկ տեղ ազատվի շուտով, ես ձեզ կգրանցեմ նախապես, բայց անպայման խնդրում եմ ժամանակին կներկայանաք»:

Ես բավարարված, շնորհակալություն եմ հայտնում և դնում լսափողը: Ես լսել եմ նրա մասին ու գիտեմ, որ այդպիսի անունով երգիչ է եղել: Բայց օգտվելով նրա թողած ժառանգությունից, չգիտեմ ով է ժառանգատուն, միայն ինչ-որ պատմություններ եմ լսել նրա մասին: Բայց ահա պարզվում է, որ այստեղ Ֆրանսիայում, նրան լավ են ճանաչում:

Ավելի ուշ ինձ սպասում էր նոր անակնկալ: Բրյուսելում ես պետք է ստանայի իմ «նոր մեծ» ժառանգությունը: Ժառանգությունը ես ընդունեցի կայարանի տոմսարկղից:

- Երկու տոմս խնդրում եմ, դեպի Փարիզ, - դիմեցի ես անընդհատ իր էկրանին նայող տոմսավաճառին:

- Հարյուր քսան ութ եվրո և վաթսուն, - առանց գլուխը բարձրացնելու ասաց տոմսավաճառը:

- Իսկ ավելի էժան հնարավո՞ր է, - հարցրեցի ես:

- Ոչ, - անմիջապես խոսքս կտրեց տոմսավաճառը, չցանկանալով նույնիսկ գլուխը բարձրացնել դեպի ինձ :

- Այդ դեպքում երկու տոմս և երկու ստացական վճարման մանրամասնություններով, - նեղված ավելացրեցի ես, չնայած ամենևին ստացականի կարիք չունեի:

- Ի՞նչ անունով պատրաստել ստացականը, - նույն տոնով պատասխանեց տոմսավաճառուհին:

- Մարգարյան, - շպրտեցի ես, առանց ասելու իմ անունը, շրջելով գլուխս դեպի կայարանի իրարանցմանը: Մի պահ գլուխս հետ շրջելով դեպի տոմսավաճառը, տեսա որ նա արդեն բարձրացրել է գլուխը և ուշադրությամբ ինձ է զննում:

- Իսկ դուք անձնագիր ունե՞ք, - հարցրեց տարեց տոմսասավաճառուհին, նա առաջին հայացքից երիտասարդ միջին տարիքի կնոջ էր նմանվում:

Բելգիայում ընդհանրապես, տոմսարկղում փաստաթուղթ չեն ուզում, դրա համար ես ավելի զայրացա ու հպարտորեն պարզեցի անձնագիրս դեպի տոմսավաճառը :

Տոմսավաճառը նայեց անձնագիրս, վերցրեց այն ու դուրս եկավ մի, հետո մտավ մի այլ տարեց, բայց լավ պահպանված կնոջ հետ: Սա ևս ինձ սկսեց աչքերով մանրակրկիտ զննել: Հետո լայն ժպտալով ասաց. «Եթե սպասեք ևս մեկ ու կես ժամ, ապա երկու տոմս կա հաջորդ գնացքի համար առաջին կարգում, ընդհանուր գումարը կկազմի վաթսուն ութ եվրո, համարյա երկու անգամ ավելի քիչ սովորական երկրորդ կարգի գնից»:

Ես իհարկե զարմացած անսպասելի հաջողությունից համաձայնվեցի և ընկերոջս հետ գնացքում վայելեցի ինձ ժառանգություն հասած առաջին կարգը, նորից ոչինչ չիմանալով ժառանգատուի մասին:

Երկար ժամանակ խորամանկորեն օգտվելուց հետո ինձ հասած ժառանգությունից, վերջապես մի օր մտքովս անցավ ստուգել ժառանգատուի մասին տեղեկությունները և ահա այստեղ ես հայտնաբերեցի մի իսկայական հարստություն, որը թողել էր իմ ժառանգատուն իր ազգին և որը պահված էր տարատեսակ խոսակցությունների և ինֆորմացիայի բացակայության բանալիներով:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻՆ ՓՆՏՐՈՒՄ ԵՆ ՇԱՏԵՐԸ

Երբ փնտրում էի նրա մասին համացանցում, գտա երկրպա-

➲17

16⊃

գուների մի բանակ, որոնք պատմում էին Մարկ Արյանի երգերի տակ անց կացրած իրենց երիտասարդության, հուզումների, սիրո կամ լավագույն պահերի մասին: Ֆորումներում գրում են նրա մասին տարբեր երկրներից, Հոլանդիա, Բելգիա, Լիբանան, Եգիպտոս, Թուրքիա, Կանադա, ԱՄՆ և այլն: Փնտրում են ամենուրեք նրա երգերի հավաքածուները, նշելով որ այն հնարավոր չէ գտնել հիմա արդեն խանութներում: Պատմում նրա հետ կապված հուշեր: Պարզվում է համաշխարհային մակարդակի երգիչ է եղել Մարկ Արյանը: Շուտով ես պետք է ցնցվեի և անպատասխան հարցերի մեջ ընկնեի մի փաստից: Ֆրանսերենով գրված հղումների մեջ, մեր հայրենակիցները չհասկանալով մեծամասնությամբ գրված ֆրանսերենով տեքստերը, ավելացնում են ֆորումում այսպիսի հղումներ: Մեջբերում եմ երկուսը. Կարինե Սահակյանցը գրում է. «Ես շնորհակալ եմ ադմինիստրատորից: Հույս ունենք, որ Մարկ Արյանը մի օր նորից կվերադառնա Հայաստան և համերգ կտա»: Տիկին Սահակյանցը կարծում է, որ Մարկ Արյանը դեռ կենդանի է:

Իսկ Դոկտոր Գուրգեն Կարապետյանը գրում է. «Երկար ժամանակ է ինչ փորձում եմ հասկանալ, ինչպե՞ս է հնարավոր, որ այս մեծ երգիչը մոռացված է Հայաստանում, երբ իմ սերունդը աղոթում էր նրա երգերի տակ, երբ նա համարվում էր ամենաճանաչված ու հայ առաջին արտիստը: Երբ գրվում էին բազմաթիվ հոդվածներ նրա մասին հայերենով և ռուսերենով, երբ պատրաստում էին բազմաթիվ հեռուստահաղորդումներ նրա մասին, ռադիոյով անդադար նրա երգերն էին դնում: Նույնիսկ ես պատրաստել եմ ռադիոհաղորդում նրա մասին, գրել հոդված, ներկայացրել հեռուստատեսությամբ: Իսկ հիմա ոչ մեկը չգիտի նրա մասին և երեսուն տարի անց միայն նրա եքգերից մի քանիսն է հնարավոր գտնել: Ես ուզում եմ հասկանալ ի՞նչ եղան 1968 թ. Երևանյան Համերգի ձայնագրությունները և հեռուստատեսային հաղորդման տեսագրությունը: Եվ իմ ցանկությունն է վերադարձնել Մարկ Արյանի բոլոր երկու հարյուր երգերը: Ես շարունակում եմ փնտրել նաև Երևանյան Համերգում նրա հնչեցրած երգերը»:

Դոկտորը աշխատել է ռադիոյում կամ հեռուստատեսությունում, ինչպես ինքն է գրում, բայց չի կարողանում գտնել Մարկ Արյանի ձայնային կամ տեսագրության որևէ նմուշ և օգնություն է խնդրում, որպեսզի գտնեն արտասահմանում Մարկ Արյանի Երևանյան ձայնագրությունները:

Մարկ Արյանը 1969-ին, Երևանյան համերգներից հետո, թողարկել է հայերեն երգերով ձայնասկավառակ «Իմ սպիտակ սարեր» անվանմամբ: Սկավառակի առաջին շապիկի վրա գրված է «Ես գիտեմ» և «Երևան» երգերի անունները: Բառերը և երաժշտությունը Մարկ Արյանի, մակագրությամբ: Պետք է նշել, որ Մարկ Արյանը իր բոլոր երգերի բառերի և երաժշտության հեղինակն է: Մի բացառությամբ, «Երևան» երգի բառերի հեղինակը Թամարա Դեմուրյանն է, երաժշտությունը Մարկ Արյանինը:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Հետպատերազմյա աշխարհը փնտրում էր նոր էջ: Վաթսունականի երիտասարդությունը, որը ծնվել էր պատերազմից հետո, ուզում էր ազատվել հայրերից մնացած պատերազմի հոգեբանական շղթաներից: Կառուցել նոր երազանք, նոր սերունդների համար: «Բեյբի բում»-ի երիտասարդությունը պետք է հեղափոխեր աշխարհը վաթսունականներին: Արևմուտքում բիթլզները պետք է դառնային երիտասարդության տարերքը, Էլվիսը Նահանգներում դեռ պետք է տաներ այդ երիտասարդությանը քաղցր պատրանքների երկիր: Ֆրանսիայում երիտասարդությունը դուրս պետք է գար հեղափոխության, առանց հասկանալու ինչի, կամ ում դեմ: Արևմտյան բուրժուազիայի երեխաները դեռ պետք է դուրս գային փողոց դառնալու բայկերներ և հիպպիներ: Համաշխարհային մշակութային հեղափոխության ալիքի ազդեցության տակ էր նաև երկաթյա պատերով Սովետական Միությունը: Այդ ալիքից մի քանի կաթիլ ընկնում էին պատերից այս կողմ: Երիտասարդությունը այստեղ կառուցում էր սեփական երազանքը:

Սովետական Հայաստանի վաթսունականների նոր սերունդին բաժին էր ընկել կրկնակի շղթա: Հայրերի պատերազմի և պապերի Հայրենիքի կորստյան շղթաները: Հայրենիքի իղձը պարփակված էր Սովետական մեծ երկրի պարտադրված երջանկությամբ: Խորհրդային Հայաստանի երիտասարդությունը փնտրում էր իր արմատները, սակայն պարտավոր էր նրան փնտրել կարմիր ակնոցներով և այն էլ միայն սովետական արտադրության:

Հայկական նոր սերունդը բաժանված էր երկու մասի: Հայրենիքից պարտադրաբար զրկված, սակայն հայրենիքի իղձով օտարության մեջ ապրող սերնդի, և հայրենիքում ապրող, սակայն հայրենիքի իղձից



պարտադրաբար զրկված սերնդի: Առաջինները պետք է փնտրեին հայրենիքը, վերջինները հայրենիքի իղձը: Եվ այն համաշխարհային ալիքի տակ, որը սովետական երկաթյա պատերից ներս էր շպրտում հեղափոխվող մշակույթի մի քանի կաթիլ: Հայաստան պետք է մտնեին հայրենիքը փնտրող, օտարության մեջ ապրող նրա որդիները, որպիսի ցանեին հայրենիքի իղձը Հայաստանում ապրող նոր սերնդի հոգիներում:

1968 թ. Հոկտեմբեր: Երևանը տոնում է իր 2750 ամյակը: Արդեն երեք տարի էր ինչ Երևանյան փոշոտված օդում պտտվում են ազգայնական տրամադրությունները: Տոնական իրադարձությունների և ազգային աներևույթ խառնաշփոթի մեջ հայտնվելու է և իր ժողովրդի սրտի ու գիտակցության մեջ է մտնելու Մարկ Արյանը:

Մարկ Արյանի ժողովրդականությունը շատ մեծ էր Հայաստանում: Վաթսունութին նրա համերգին Հանրապետական ստադիոնը լեփ լեցուն էր: Խորհրդային Միության երեսուն օրվա շրջագայության ընթացքում Մարկ Արյանը բազմաթիվ համերգներ էր տվել, սակայն այն համերգը, որ պետք է տար Հայաստանում, նրա համար ամենակարևորն ու հուզականն էր: Նա Հայաստանյան համերգին պատրաստվել էր երկար, նա հրավիրել էր Եվրոպայի լավագույն ձայնային օպերատորներին, իր հետ բերել էր ամենաժամանակակից ձայնային տեխնիկան: Երևանը պատրաստվում էր ընդունել Մարկ Արյանին...

## ԱՍԵԿՈՍՆԵՐ ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻ ՄԱՍԻՆ

Հայաստանյան համերգներից հետո Մարկ Արյանը անհետացավ Սովետական իրականությունից: Նրա մասին պտտվում էին բազմաթիվ ասեկոսներ: Պատմում էին, թե Մարկը լրտեսության մեջ կասկածվել է Մոսկվայի կողմից: Տրամաբանական է, որ Խորհրդային միությունում միայն մի քանի օր մնացած երգիչը չէր կարող լրտեսել: Կամ ասենք, որ նա ընդունել է իսլամ և գնացել Թուրքիա ապրելու: Ինչպես կարող էր Հայաստանում հայերենով «Սրբազան Հայրենիք» երգողը իսլամանալ: Կամ ասենք «Իստամբուլ, Իստամբուլ» երգի համար «պատժվել է Ազնավուրի կողմից» և Օլիմպիա համերգասրահում մնացել է առանց հանդիսականների: Այս ասեկոսներին միգուցե ինքս էլ հավատայի, եթե չլիներ Մարկ Արյանի կենսագրությունը, կենսագրության ժամանակացույցը: Նրա անցած ուղին, և իսկական հայորդու այն կարողությունները ու ունակությունները, որոնք միայն հատկանշական են հանճարին: Նա կարողացել է իր ձեռքերով բարձրանալ հասնել այն բարձրունքներին, որին հասնում են միայն շոուբիզնեսի գերժամանակակից ուղղորդիչներով: Նա միայնակ խորտակելով շոու բիզնեսի փողից սարքված պատերը, մնացել է ժամանակակիցների հոգիներում ու հիշողությունների մեջ առհավետ: Սնակի այս խոսքերը միայն կարելի է նրան վերագրել. «քեզ կաղ են ասել, սակայն դու հասել ես այնտեղ, ուր ոչ ոք չի հասել, քեզ կույր են ասել, սակայն դու տեսել ես այն, ինչ ոչ ոք չի տեսել»:

## ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Մարկարյանները հիմնվում են ֆրանսիայում**

Գևորգ Մարկարյանը և նրա կին Վարդանուշը, փրկված եղեռնից, ութ տարի Սիրիայում և Լիբանանում բռնագաղթվելուց հետո, գալիս են ֆրանսիա որտեղ և ունենում են իրենց երրորդ որդուն: Նրա

⊃18

17⊃

անունը Հարություն (Հենրի) Մարկարյան էր: Ծնողները որոշել էին անպայման կնքել նրան հայկական անունով: Ծնվել է 1926 թվի 14 նոյեմբերին, Ֆրանսիական Վալանս քաղաքում: Նա Մարկարյան ընտանիքի յոթ երեխաներից երրորդն էր: Երկուսը մահացան վաղ հասակում: Մնացին երեք քույր Անահիտը, Ժանինը, Դոմինիկը և եղբայրը՝ Ժակը:

1936-ին հայրը, հավաքելով իր բոլոր միջոցները, գնում է մի փոքրիկ ջրաղաց Վալանսի արվարձանում և սկսում արտադրել արևլյան սննդամթերք հացահատիկային մթերքի տեսակներից: Նա հիմնում է նաև «ՄԱՐԿԱԼ» ձեռնարկությունը, որը յոթանասունհինգ տարի անց դեռ գոյություն ունի: Հիմա արդեն մեծ ձեռնարկություն է և մասնագիտացված է բիոլոգիական սննդի արտադրությամբ:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԸ ՀԱՋՈՂԱԿ ԳՈՐԾԱՐԱՐ

Վաղ երիտասարդ տարիքում Մարկ Արյանը ծանր հիվանդացավ, բարդ վիրահատությունից հետո երեք տարի բուժվում էր հատուկ առողջարանում և պայքարում մահվան դեմ, մաքառելով կյանքի և մահվան միջանցքում: Քսանմեկամյա Մարկը վերադարձավ տուն արդեն առողջ, նա արդեն որոշել էր, որ երաժշտությամբ պետք է զբաղվի: Նա երաժշտական դպրոց չէր գնացել: Ինքնուրույն սկսեց սովորել սոլֆեջիո, դաշնամուր, հարմոնիա, և այն ամենը ինչ պետք էր երաժիշտին: Երեք տարի նա աշխատում էր օրական 12 ժամ, երբեմն 16: Երեք տարի անց նա զարմացրեց բոլորին նվագելով Բեթհովենի «Ապասիոնատան», որը բավականին բարդ ստեղծագործություն է նույնիսկ փորձառու երաժիշտների համար: Նա զբաղվում էր նաև պոեզիայով և գրում սեփական բանաստեղծություններ:

Երբ նա արդեն քսանհինգ էր, հայրը նրան նշանակում է ընտանեկան զարգացող բիզնեսի կառավարիչ: Հակառակվելով իր սրտին, սակայն ոչ հորը, նա ստանձնում է այդ պատասխանատվությունը և շատ արագ ցուցադրում նաև գործարարության մեջ իր տաղանդը: Երեք տարիների ընթացքում փոքրիկ ընտանեկան բիզնեսը դառնում է 45 աշխատող ունեցող ձեռնարկության: Այնուհետև, Վալանսում բացում է երաժշտական խանութ, որտեղ օգնում են նրան քույրերը: Շատ արագ ձայնասկավառակների խանութը, մեծ հաջողություն է ունենում և կարճ ժամանակահատվածում դառնում երաժշտական սկավառակների խանութների ցանց: «Հաջողությունը նրա մեջ էր, որ իմ վաճառողները գիտեին ինչ են վաճառում, նրանք գոնե մեկ անգամ պետք է լսած լինեին այն, ինչ վաճառում են» կպատմի նա մի օր: Այնուհետև նա մի օր անսպասելի որոշում է ընդունում և վաճառում հաջող ընթացող բիզնեսը: Թողնելով սկավառակների վաճառքը, նա տեղափոխվում է Փարիզ, բնակարան գնում Օլնեյ Սու Բուա արվարձանում: Ինչպես սկսնակ հեղինակ, թակում է բոլոր դռները, սակայն նրան քաղաքավարի մերժում են: Նա չի վհատվում, և քանի որ ոչ ոք չի ուզում երգել իր գրած երգերը, նա որոշում է ինքը երգել: Այնուհետև, հիմնում է սեփական ձայնագրման ստուդիան, անվանելով այն «Մալաթիա»: Ինչպես նաև թողարկում սեփական «Մարկալ» ապրանքանիշով ձայնասկավառակներ: Վաթսունականներին նրա քույրերից մեկը ամուսնանում է բելգիացու հետ և նրանք միասին ձեռք են բերում մի գիշերային ակումբ, բելգիական ծովափին՝ Զեեբուրգում և անվանում «Բարք ա Ժակ»:

## 60-ԱԿԱՆՆԵՐԻ ՏԱՐԵՐՔԸ, ,ԲԱՐՔ Ա ԺԱԿԵ-Ը ԵՎ ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆԸ

Մի քանի անհաջող փորձից հետո Հարություն Մարկարյանը որդեգրում է Մարկ Արյան կեղծանունը: Թողարկում նոր սկավառակ «Արյանները և եվրոպական տղաները» երեք հազար օրինակից և ուղևորվում դեպի Զեեբրուգ «Բարք ա ժակ»:

1963 թ. Օգոստոսն է: Բելգիայի բոլոր ակումբներում Մարկ Արյանի սկավառակն է պտտվում: Մի քանի օրվա ընթացքում Մարկ Արյանի երգերը դարձել են հիթ: Ձայնասկավառակների գնման կետերում ֆանտաստիկ պահանջարկ է առաջացել: «Բարք ա Ժակ» Նավակ ակումբ ընկնելը աննհարին է: Երիտասարդ շիկահեր և սևահեր աղջիկները լայն շրջազգեստներով, և տղաները լայնաբերան տաբատներով և վերնաշապիկներով անընդմեջ պարում են Մարկ Արյանի երաժշտության ներքո:

Վաթսուներեքի վերջում Մարկ Արյանը իր ապրանքանիշով պայմանագիր է կնքում խոշոր երաժշտական «Գրամոֆոն» ֆիրմայի հետ: Հաջողությունները հաջորդում են միմյանց: Հաջորդ տարվա ընթացքում Մարկ Արյանը թողարկում է ևս երկու սկավառակ: «Եթե ես լինեի արքայի որդին» երգը Հոլանդիայում մեկ ամիս դառնում է համար առաջին հիթը և մեկ շաբաթվա ընթացքում այստեղ վաճառվում է ավելի քան տասներկու հազար սկավառակ:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻ ՊՐՈԴՅՈՒՍԵՐԸ ՄԱՐԿ ԱՐՅԱՆՆ Է

Նա չէր սիրում պայմանագրեր կնքել, որտեղ կային տարատեսակ պարտադրություններ: Նախընտրում էր ինքը պարտադրել: Պրոդյուսերական տներից արված բազմաթիվ առաջարկներ մերժելուց հետո, որոշում է հիմնել սեփական պրոդյուսերական տունը: Ջեֆ Դեբռեկը դառնում է նրա պրոդյուսերական տան գեղարվեստական ղեկավարը: Այսուհետ երաժշտական աշխարհում Մարկ Արյանը նաև որոշող է: Նա ունի իր սեփական ձայնագրման ստուդիան, ձայնասկավառակների սեփական ապրանքանիշը, թողարկում է ձայնասկավառակներ, ունի իր պրոդյուսերական տունը, ունի նաև վեց հոգանոց երաժշտական խումբ, ձայնային օպերատոր, գեղարվեստական ղեկավար, ինքնուրույն հրացնում է իր թողարկած երգերը, գրում երաժշտությունը ու բառերը և այն կատարում բեմի վրա: Նա նաև հետագայում կաշխատի այլ երգիչների հետ: Ֆրանսիական առաջավոր շոու բիզնեսի աշխարհին չենթարկվող փոքրամարմին հսկան շուտով միայնակ ունենալու է միջազգային համբավ:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԸ ԱՐԵՎԵԼՔԻ ԱՍՏՂ ԵՎ ԱՐԵՎՄՈՒՏՔԻ ՏՐՈՒԲԱԴՈՒՐ

Վաթսունչորսի ամռանը Լիբանանյան «ԼՍԴ» ձեռնարկությունը պայմանագիր է կնքում Մարկ Արյանի հետ Լիբանանում նրա սկավառակները իրացնելու համար: Կարճ ժամանակահատվածում բոլոր մինչ այդ թողարկված երեք սկավառակները մեծ պահանջարկ են ունենում այս երկրում: Սակայն նրան արևելքի աստղ պետք է դարձներ նրա զգացմունքները դեպի մի երիտասարդ կնոջ, որոնք պետք է վերափոխվեին երաժշտության: «Կեթի» երգը լիբանանում նրա չորրորդ ալբոմի երգերից էր, որտեղ նաև «Դու ես իմ սրտի հիթ պարադի առաջինը» երգն էր: Այս երգեր կպտտվեն վաթսունականներին բազմաթիվ միլիոն անգամներ:

Վաթսունվեց թիվն է: Մարկ Արյանը ունի միջազգային համբավ: Նա ունի պայմանագրեր ավելի քան տասնհինգ երկրների հետ: Շրջագայությունների ժամանակ նա հավաքում է բազմահազար հանդիսականներով լեցուն դահլիճներ և մարզադաշտեր: Թուրքիայում շրջագայության ժամանակ իր համերգներին վաճառվել էր ավելի քան 80000 տոմս: Իստամբուլի փողոցներում զբոսնելուց ներշնչվում է «Իստամբուլ» երգը, որը զուտ լիրիկական երգ է: Ահա նրա բառերը թարգմանաբար.

Իստամբուլ, Իստամբուլ
Մտքովս հաճախ են անցնում
Քո մզկիթներն ու երկար մինարեթները
Որոնք ձգվում են դեպի երկինք:
Իստամբուլ, հաճախ երազում տեսնում եմ
Բոսֆորի կապույտ աչքերը,
Ուր երևում է մի կերպար շատ սիրելի
Ես թողեցի քո պատերի մեջ,
Մի աղջկա անարատ սրտով,
Մի աղջկա, ում ես սիրեցի
Որը գեղեցիկ է ինչպես պոեմը...

Այս երգն է պատճառը ասեկոսների: Մարկ Արյանը Թուրքիայում եղել է երեք անգամ, տասը օրով, շրջագայությունների ժամանակ: Պետք է նշել, որ Թուրքիա նրան հրավիրել են տեղի հայ համայնքի ազդեցիկ դեմքերը: Նրա կյանքում եղել են երեք կին Կեյթը, Նիկկին, ամուսնացել է մեկ անգամ, Մարյանն Բուրիեսի հետ, այնպես որ այս վարկածը չի համապատասխանում իրականությանը: Շարունակենք փնտրել իրական խնդիրը:

Նա Շահի հրավերով այցելում է Իրան, սակայն վստառողջ լինելու պատճառով նրա համերգը հետաձգվում է: Շահը ուղարկում է անձնական բժշկին և շուտով ապաքինվելով նա համերգ է տալիս Շահի ներկայությամբ:

Վաթսունականներին Մարկ Արյանը հրավիրվում է հեռուստատեսություններ, Փառատոններ, բոլոր եվրոպական երկներում, արևելքում, Կանադայում, ԱՄՆ-ում: Սակայն զարմանալիորեն

⊃19

19Ͽ

ոչ Ֆրանսիայում: Նրա սկավառակները վաճառվում են Ֆրանսիայում անդադար, սակայն ռադիոյով նրան հազվադեպ է հնարավոր լսել:

1968 թ. թողարկվում է Մարկ Արյանի տասներորդ ալբոմը: Այդ տարի Արյանը կթողարկի ևս երկու ալբոմ:

## ՀԱՅՐԵՆԻՔԻ ԵՐԳԸ

Սովետական Միությունում Մարկ Արյանը երեսունօրյա շրջագայության էր: Մոսկվայում նրա համերգների տոմս գտնելը անհնար էր: Երևանում նա տվեց մի քանի համերգ և ամենակարևոր համերգը Հանրապետական մարզադաշտում 30000 հանդիսականի առջև: Մինչ այդ ոչ մի երգիչ չէր համարձակվել երգել մարզադաշտում: Նախ երաժշտական ակուստիկայի տեխնիկական խնդիրներն էին բարդ և ծախսատար, երկրորդ, որ մարզադաշտ լցնելը հանդիսականներով շատ դժվար էր: Սակայն Արյանը արդեն բազմաթիվ անգամ լցրել էր բազմահազար համերգային դահլիճներ: Իսկ Հայաստանում նա գիտեր, որ երգելով հայերեն նրան տրիումֆ էր սպասում: Նա նախընտրում էր լինել հայերենով հայրենիքի երգը երգող սփյուռքահայ երգիչ, քան անհասկանալի լեզվով երգող ֆրանսիացի աստղ՝ հայկական ծագումով:

Երևանում նա երգեց ինը երգ հայերենով, ինչպես նաև «Երևան» երգը և մի քանի ֆրանսերեն երգեր: Նույն թվականին թողարկվեց նրա հայերենով ձայնասկավառակը: Յոթանասունականներին նրա երգերը լսում էին ամենուր Երևանում: Նա այլևս հայրենիքի ձոնը հնչեցնողն էր:

Կարոտով լցված երգել եմ ես, երգել<br>
Օտար ափերին նորեն քեզ երազել<br>
Արարվեցար ձեռքումս երկիր իմ ազատ<br>
Դու բացիր վառ զարուններ համայն հայության<br>
Փառք քո զավակներուն, քեզնով են հպարտ<br>
Փառքդ տանեմ աշխարհներուն իմ Երևան<br>
Եկել եմ փարվեմ քո սրբազան հողին<br>
Սևանից զուլալ, իմ Հայրենիք անգին:<br>
…………………………………………..

Սա թուրքամետության մեջ անարդարաբար մեղադրվող երգչի երգն է, որ երգում է նաև «կսիրեմ ձեզ սպիտակ սարեր» երգը ձոնված Արարատին: Ահա բառերը թարգմանաբար (քանի որ հայկական տարբերակը կորել է).

Երբեմն աչքերս փակ<br>
Կտեսնեմ ձեր գագաթները սպիտակ<br>
Կլսեմ ձայնը պարզ<br>
հովիտներու աղբյուրներից<br>
Կսիրեմ ձեզ սպիտակ սարեր, Սիրուն սարեր իմ երկրի<br>
Կսիրեմ ձեզ սպիտակ սարեր, քնքուշ սարեր իմ երկրի<br>
Կծերանամ, ձյունի պես սպիտակ մազեր կունենամ<br>
Նախնիներիս մոտ կյանքիս վազքը կվերջացնեմ<br>
Կսիրեմ ձեզ սպիտակ սարեր<br>
Քնքուշ սարեր իմ մայր երկրի<br>
Կսիրեմ ձեզ սպիտակ սարեր իմ երազների<br>
………………………………………

Ցավոք նրա բոլոր հայերեն երգերը չկան: Միգուցե և կան նրանք՝ ինչ-որ մեկի մոտ: Վաթսունիններին նկարահանվել է ֆիլմ «Երգում է Մարկ Արյանը»: Այն գրված է Հայֆիլմի արխիվի ցանկում, բայց մինչ այսօր երբևէ չի ցուցադրվել:

Հասկանալի է, որ սովետական այդ ժամանակահատվածում ազատ երկիր և սրբազան հայրենիք երգելը շատ համարձակ էր և որ նրա մասին ինֆորմացիայի կորուստը մեր երկրում տրամաբանական էր: Սակայն ինչո՞ւ, լինելով միջազգային ճանաչում ունեցող երգիչ, իր երկրում՝ Ֆրանսիայում, նրա մասին ինֆորմացիան բացակայել է, իսկ սկավառակները չեն թողարկվել: Այստեղ ես գալիս եմ այն եզրահանգման, որ «Օլիմպիա»-ի հետ կապված պատմության մեջ միգուցե ճշմարտություն կա: Ի՞նչ է եղել իրականում: Ինչո՞ւ յոթանասունականներին սկզբներին Մարկ Արյանի նոր սկավառակն արգելվում է Ֆրանսիայում և Արյանը դիմում է խորամանկության, շապիկի վրա գրելով «արգելված սկավառակ» և վաճառում ձեռքի վրա: Ինչո՞ւ յոթանասունականների երկրորդ կեսին և ութանասունին նա զբաղվում է միայն ուրիշ երգիչների ձայնագրությամբ: Եթե նա համարվել է թուրքամետ, ապա ինչո՞ւ այդքան ակտիվ սփյուռքյան մամուլը լռում է: Արխիվներում նրա մասին ոչինչ չկա: Լռում են նաև նրանք, ովքեր թվում է թե, գիտեն նրա մասին:



Հասկանալու համար, թե ինչու Ֆրանսիայում Արյանը համերգ չէր տալիս և ստուգելու այն վարկածը, թե Ազնավուրը գնել էր «Օլիմպիայում» Արյանի բոլոր տոմսերը, մեզ կօգնի հենց ինքը «Օլիմպիան»:

## Ո՞ՒՄ Է ՊԱՏԿԱՆՈՒՄ ՕԼԻՄՊԻԱՆ

Փարիզյան «Օլիմպիա»-ն իրականում մեծ համերգասրահ չէ: Այսօր այն երկուհազար տեղ ունեցող դահլիճ է: Երեսուն տարի առաջ միայն հազար երկու հարյուր: Մարկ Արյանը սովորաբար կարողանում էր լցնել վեց յոթ հազարանոց կոնգրեսների պալատ: Հայաստանում երեսուն հազար հանրապետական մարզադաշտ: Սակայն ասում են, եթե արտիստը չի անցնում «Օլիմպիա»-ով ճանաչում չի ունենում: Ինչո՞ւ հենց Օլիմպիայով:

«Օլիմպիան», նախկին փարիզյան կաբարեն, որի սեփականատերն էր Մուլեն Ռուժի հիմնադրողը, անցած դարի հիսունականներին դառնում է համերգասրահ կամ մյուզիք հոլ: Այնուհետև սեփականության իրավունքը գնում է «Յունիվերսալ մյուզիք»-ը: Այս կազմակերպությունը երաժշտական բիզնեսի համաշխարհային, խոշորագույն կոռպորացիա է և Ֆրանսիայում նրա գործունեությունը համարյա մենաշնոր է: Այս կազմակերպությունը կապիտալի ձեռնարկություն է, հիմնված Ֆրանսիական Սոցիետե Ժեներալ բանկի կապիտալի վրա, որն էլ իր հերթին բխում է հանրահայտ Ռոտշիլդների կապիտալից: Յունիվերսալ մյուզիքը խոշորագույն սկավառակների թողարկող է, տիրում է հսկայական քանակի հեղինակային իրավունքների, կազմակերպում շոու բիզնես: Բոլոր այն երգիչները, որոնք կնքում են պայմանգիր «Յունիվերսալ մյուզիք»-ի հետ, արագ բարձրանում են «Օլիմպիայով», և խաղում այնուհետև նրա գրված կանոններով: «Յունիվերսալ մյուզիքը» հսկայական գումարի հոսք է բերում Սոցիետե Ժեներալ բանկին, իհարկե երգիչների արվեստի և հանդիսատեսի երկրպագության շնորհիվ: Այս կազմակերպությունը կարող է դարձնել աստղ, և աստղին մարել իր մեդիատիկ և ֆինանսական ուղղորդիչներով: Եթե ուշադրություն դարձնեք, ապա շատ ձայնասկավառակների շապիկների վրա կտեսնեք «Յունիվերսալ մյուզիք» մակագրությունը: Համաշխարհային ճանաչում ունեցող երգիչների մեծ մասը պատկանում են այս ձեռնարկությանը: Եվ հենց նա էլ տնօրինում է երգիչների բեմական ճակատագիրը:

«Օլիմպիայի» պատմության վարկածը ուղղակիորեն կապված է Մարկ Արյանի երաժշտական աշխարհում «ինքնագլուխ» գործունեությամբ: Նա, լինելով ոչ միայն արվեստագետ, այլև հմուտ ձեռներեց, հիմնել էր սեփական երաժշտական կայսրությունը և կառուցում էր սեփական Արարատը ընդդեմ Օլիմպիայի:

## ՄԱՐԿ ԱՐՅԱՆԻ ՍՏՈՒԴԻԱՅՈՒՄ ՁԱՅՆԱԳՐՎԵԼ ԵՆ…

Նա բացում է իր ձայնագրման երկրորդ ստուդիան Օհեյնի առանձնատան մոտ, որը Վաթերլոոի շրջանում է: Զինում է իր նոր ստուդիան ամենավերջին տեխնիկայով: Ներդնում է 80000 դոլլար և լատինական Ամերիկայից հատուկ ծառի փայտ է բերում, որից սարքված պատերը բարձր ակուստիկա ունեն: Մարկ Արյանի մոտ ձայնագրվում են արդեն շատերը: Մեծ նվագախմբերից մինչև «Eagles», Antony Quinn, Marwin gay, և այլոք:

Կենսագրությունը ուսումնասիրելով տեսնում ենք, որ Մարկ Արյանը յոթանասունականների երկրորդ կեսին մինչև ութանասուն-

Ͽ20

